


ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Անահիտն իմ թանկագին
Շատ է սիրում երգել.
—«Մոսկվա—Պեկին, Մոսկվա—Պեկին,
Խտացեք դուք, շարքեր»...

Անահիտն իմ փոքրիկ է շատ,
Յոթ տարեկան հազիվ.
Բայց գիտե նա այնպես հաստատ
Չինաստանի մասին...

Երբ հարցնում եմ՝— Իսկ ինչո՞ւ ես
Չինաստանը սիրում.
Լրջանում է նա մեծի պես
Եվ պարզ պատասխանում.

—«Մոսկվա—Պեկին, Մոսկվա—Պեկին»...
Հայրի՛կ, դու չե՞ս լսել...
Երբ Մոսկվան է սիրում մեկին,
Ուրեմն, պետք է սիրել:

Երգիր, երգիր, իմ թանկագի՛ն,
Դու էլ կանգնիր շարքում.
—«Մոսկվա—Պեկին, Մոսկվա—Պեկին»
Ողջ աշխարհն է երգում...






*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 7

ՀՈՒԼԻՍ

1952 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 24-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Լենինականի մանկական սանատորիայում: Հանգստացող երեխաները զբոսանքի ժամին:

*Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ*



# Կապույտ ԹԻԹԵՌ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

«Այս կապույտ թիթեռը բռնել եմ հուլիսի երեքին, Սառն աղբյուրի մոտ. անունը չգիտեմ, այդ պատճառով էլ չեմ գրում: Կհարցնեմ բնագիտության դասատու ընկեր...»

Անուշիկը այնպես էր տարվել իր աշխատանքով, որ Սեդայի ներկայությունը զգաց միայն այն ժամանակ, երբ վերջինս բացագանչեց.

— Ի՜նչ սիրուն թիթեռ է՜...

Անուշիկը շրջվեց, ուրախ ժպիտով նայեց ընկերուհուն և հպարտ-հպարտ ասաց.

— Իհարկե սիրուն է, նայի՛ր, թվում է, թե ամբողջովին է կապույտ. բայց եթե ուշադիր նայես՝ զանազան գույների շատ գեղեցիկ նախշեր ունի, նայի՛ր...

— Սիրո՞ւն է,— նորից կրկնեց Սեդան:

Մի պահ ընկերուհիները դիտում էին թիթեռը:

— Նայի՛ր, ես ինչպիսի նվեր եմ պատրաստում դպրոցի համար,— լռությունը խախտեց Անուշիկը, ապա մեկիկ-մեկիկ ալբոմի թերթերը շրջելով, սկսեց բացատրել.— Գիտե՞ս, սա ոչ միայն կոլեկցիա է, այլև հուշատետր: Այստեղ ես գրում եմ, թե ինչպես եմ անցկացնում ճամբարի յուրաքանչյուր օրը, ինչ նոր բան եմ սովորում: Հետո ալբոմի նույն թերթի վրա փակցնում եմ օրվա ընթացքում գտած բույսերի կամ միջատների նմուշները:

Անուշիկի ալբոմը շատ հետաքրքրեց Սեդային: Ինքն էլ էր պատրաստում բույսերի և միջատների կոլեկցիա հարազատ դպրոցին նվիրելու համար, բայց ինչ խոսք, որ Անուշիկի նվերը ավելի լավը կլիներ: «Մի դասարանով ինձանից ցածր է, բայց ինչ լավ է մտածել» զարմանում էր Սեդան:

Բայց նրան ամենից ավելի գրավում էր Անուշիկի գտած կապույտ թիթեռը...

— Անուշի՛կ, ինձ տուր այդ թիթեռը, ուզո՞ւմ ես, ես դրա փոխարեն իմ կոլեկցիայից քեզ կտամ երկու ուրիշ թիթեռ, որոնք քեզ դուր կգան,— հանկարծ առաջարկեց Սեդան:

«Ա՛յ քեզ տարօրինակ աղջիկ», մտածեց Անուշիկը և զարմացած նայեց ընկերուհուն:

— Իսկ քեզ համար ի՞նչ հետաքրքիր է դպրոցին նվեր տանել ուրիշի ձեռք բերածը,— հարցրեց նա:

— Ուզո՞ւմ ես, փոխարենը երեք ուրիշը տամ,— շարունակում էր առաջարկել Սեդան:

Վերջապես Անուշիկն ասաց.

— Չե՞ս տեսնում, արդեն քարոզով ամրացրել եմ ու գրել և բացի այդ, արդեն ասացի՝ ես ուրիշի գտածը չեմ ուզում նվեր տանել իմ դպրոցին: Ես ուզում եմ իմ աշխատանքով...

— Ուրեմն չե՞ս տալիս,— հարցրեց Սեդան:

— Չեմ տալիս:

Եվ ահա այստեղ պատահեց անսպասելին:

— Ես կփչացնեմ քո թիթեռը:

— Հապա համարձակվիր...

— Չե՞մ կարող:

— Չես անի:

— Չե՞մ անի,— աղաղակեց Սեդան և բռունցքով հարվածեց թիթեռին:

Թիթեռի մարմինը ճխլվեց, թևերը կոտրվեցին, ալբոմի թերթը կեղտոտվեց: Ինչպես երևում էր իր՝ Սեդայի համար էլ անսպասելի էր այդ, որովհետև նա ճչաց. «Վա՛յ»:

Մի րոպե անախորժ լռություն տիրեց: Ընկերուհու թիկունքում կանգնած Սեդան

նկատեց, թե ինչպես ալբոմի կեղտոտված էջը թրջվեց արցունքի կաթիլներով։

«Ի՜նչ վատն եմ ես, ի՜նչ վատն եմ ես», մտածում էր Սեդան, չափազանց վշտացած իր անզգուշության հետևանքի համար։ Ախր նա իսկապես չէր ցանկանում հարվածել. նա կարծում էր, թե Անուշիկը կփախցնի ալբոմը։ Սեդան մտածում էր գնալ, փաթաթվել ընկերուհուն, ներողություն խնդրել... Բայց նախ՝ հիվանդոտ ինքնասիրությունը թույլ չէր տալիս և, բացի այդ, մի՞թե այդպիսով փչացած թիթեռն ու ալբոմի էջը կվերականգնվի...

Գաղտագողի հետևելով, քիչ հետո նա տեսավ, թե ինչպես Անուշիկը արցունքը սրբեց, ապա ալբոմի կեղտոտված էջի վրա սկսեց ինչ-որ բան գրել։

«Տեսնես ի՞նչ է գրում», չգիտես ինչո՞ւ անհանգստացած մտածեց նա։

*
* *

Այդ օրը ջոկատը պետք է երկու օր տևող էքսկուրսիայի դուրս գար, ճամբարի շրջակա անտառներն ուսումնասիրելու նպատակով։

Դեռ նոր էին ուրախ երգով, աղմուկով ու ծիծաղով դուրս եկել ճամբարից, երբ Սեդան ջոկատավարից իրավունք խնդրեց վերադառնալ ճամբար։

— Ես ընդամենը հինգ րոպեով, թիթեռ որսալու իմ ցանցը մոռացել եմ,— ասաց նա։

— Լավ, գնա, միայն թե շտապ վերադարձիր,— ապա դառնալով պիոներներին ասաց.— իսկ մենք մեր ճանապարհին նշաններ կթողնենք, որպեսզի Սեդան կարողանա հեշտությամբ գտնել մեզ։

Արագ վազելով, Սեդան մտավ վրանը, շտապ վերցրեց թիթեռնիկ որսալու ցանցը, դուրս եկավ վրանից, բայց մի վայրկյան կանգ առավ ու նորից վերհիշեց նախորդ օրվա դեպքը. «Տեսնես Անուշիկն ի՞նչ էր գրում ալբոմի կեղտոտված էջի վրա» մտածեց նա։

Հետաքրքրությունը հաղթանակեց։ Մոտեցավ ընկերուհու մահճակալի կողքի փոքրիկ պահարանին, դարակից հանեց ալբոմը, շտապ թերթեց, բաց արեց կեղտոտված էջը։

Անուշիկը ճխլտված թիթեռի տակ մանր ձեռագրով գրել էր.

«Հուլիսի երեքը ինձ համար տխուր օր եղավ։ Սեդան, այ այսպես փչացրեց իմ կապույտ թիթեռը։ Իսկ ես սիրել եմ Սեդային և լավ ընկեր համարել, բայց այժմ... Ոչ, չեմ ուզում հավատալ, մի՞թե Սեդան վատն է։ Նա երևի այդ արեց առանց մտածելու...»

*
* *

Սեդան դուրս եկավ վրանից և գլխիկոր քայլեց։ Նա կարծես չէր շտապում ընկերներին միանալու։ Քայլերը նրան մեքենաբար էին տանում այն ճանապարհով, որով գնացել էին ընկերները։ Գնալով պայմանական նշանների ցույց տված ուղղությամբ, Սեդան նորից ու նորից մտքում կրկնում էր. «Իսկ ես սիրել եմ նրան և լավ ընկեր համարել»։

Գուցե Անուշիկն այժմ իրեն համարում է վատ, շատ վատ ընկեր...

«Ես կգտնեմ մի այդպիսի կապույտ, գեղեցիկ թիթեռ,— հանկարծ մտածեց Սեդան,— հետո կտամ Անուշիկին ու ներողություն կխնդրեմ»։

Իսկ որտեղի՞ց գտնել ճիշտ այդպիսի թիթեռ։ Բայց միևնույն է, եթե կապույտ թիթեռ չճարի, այն ժամանակ կգտնի մի ուրիշը, ավելի գեղեցիկը, հազվագյուտը։

Հանկարծ այդ պահին նրա ուշադրությունը գրավեց մի թիթեռ։



— Ա՜խ, ի՜նչ լավն է,— բացագանչեց Սեդան։

Եվ իրոք, թիթեռը հրաշալի էր։ Ճիշտ է, կապույտ չէր, բայց խոշոր էր, շատ խոշոր. Սեդան այդպիսին դեռ կյանքում չէր տեսել։ Թիթեռնիկի թևերը ասես վառ գույնե-

րով ներկված թավշից պատրաստված լի-
ներին։

Սեդան զգույշ վազելով, հետևեց թիթեռին։

Ահա թիթեռը նստեց վայրի մեխակի վրա։ «Հիմա կբռնեմ», ուրախացավ Սեդան։ Շարունակելով զգույշ մոտենալ, նա արագ վրա բերեց ցանցը, բայց թիթեռը խուսափեց, ու թռավ։ Սեդան նորից հետևեց նրան։

*
* *

Ջոկատի պիոներները վաղուց նախաճաշել էին. շուտով ժամանակն էր նաև ճաշելու։ Հանգստանալու համար ընտրելով անտառի միջի մի հարմար բացատ, նրանք ճաշ եփելու պատրաստություն էին տեսնում։

Ոմանք օջախ էին պատրաստում, մի քանիսը ցախ հավաքում, ուրիշներն էլ կարտոֆիլ կճպում, բրինձ մաքրում. բայց ամենքն էլ անհանգիստ էին Սեդայի համար։

Ջոկատավարը, պիոներներին հավաքելով, ասաց.

— Ընկերնե՛ր, եկեք ընտրենք մի խումբ հետախույզներ և առաջադրանք տանք գտնել Սեդային։ Ո՞վքեր են ցանկանում գնալ հետախուզության։

Ընկերուհուն փնտրելու համար գնալու ցանկություն հայտնեցին ամենքը։ Իսկ բոլորից ավելի Անուշիկը, որովհետև նրա խիղճը հանգիստ չէր։ Ընտրվեցին ութ հոգի։ Որոշեցին չորս խմբի բաժանված հետախույզներ ուղարկել չորս տարբեր ուղղությամբ։

Անուշիկն ու Հոփփոփկը պետք է գնային մինչև ճամբար ու վերադառնային։ Նրանք ճանապարհին հաճախ կանգ էին առնում և ձայն տալիս.

— Սեդա՛, Սեդա՛...

Վերջապես հասան ճամբար։ Մտան վրան։ Սեդան այնտեղ չէր։ Ինչպես երևում էր նա իսկապես եկել էր ցանցի համար, որովհետև ցանցը չկար։ Բայց հանկարծ Անուշիկը զարմացած բացականչեց։ Սեդան մոռացել էր, ալբոմը նայելուց հետո դնել տեղը։ Պահարանի վրա դրված էր ալբոմը, որի բաց էջի վրա դրոշմված էր ճխլված կապույտ թիթեռը։

«Սեդան կարդացել է իմ գրածը և հավանորեն հիմա որևէ տեղ տխուր նստած է, գիտակցելով չի մոտենում մեզ...», մտածեց նա։

Անուշիկն ու Հոփփոփկը ջոկատի հավաքատեղին վերադարձան ոլոր-մոլոր ճանապարհներով։ Սեդան դեռ չէր վերադարձել։ Բոլորն էլ մտահոգված էին և անհանգիստ։ Պարզ էր, որ նա կորցրել է ճանապարհը։

— Ընկերնե՛ր,— ասաց ջոկատավարը,— հարկավոր է արագ ճաշել, ապա հավաքատեղում հերթապահներ թողնել, որպեսզի խարույկը վառ պահեն ու ամբողջ ջոկատով գնալ փնտրելու Սեդային։

Բայց այդ պահին լռությունը խախտելով, պիոներներից մեկը բացականչեց.

— Վա՛յ, Սեդան եկավ։

Եվ իսկապես, Սեդան ծառերի ետևից դուրս գալով մոտենում էր ընկերներին։ Նա հոգնած տեսք ուներ, դեմքը, ոտքերն ու ձեռքերը ամբողջովին ճանկռոտված էին, թիթեռնիկ որսալու ցանցը բոլորովին գզգզվել էր, բայց աղջկա աչքերը ժպտում էին ուրախ։



— Օ՜հ, եթե խարույկի ծուխը չլիներ, ես ձեզ չէի գտնի,— ասաց նա։

— Բայց դու ինչո՞ւ կորցրիր ճանապարհը. չէ՞ որ մենք ամեն տեղ նշաններ էինք թողել,— այս ու այն կողմից աղաղակեցին պիոներները։

— Ես ընկա այս թիթեռի ետևից,— ասաց Սեդան գլխից վեր ցույց տալով բռնած թիթեռը:

— Ի՜նչ լավն է,— հիացան պիոներները:

— Որտեղի՞ց ես գտել...

Ամեն մեկը ցանկանում էր մոտիկից տեսնել այդ հրաշալի թիթեռը:

*
* *

Քիչ հետո Սեդան ու Անուշիկը մյուսներից առանձնացած նստած էին մի կտրած ծառի հաստ բնի վրա:

— Քեզ համար եմ բռնել այս թիթեռը, վերցրո՛ւ,— ասում էր Սեդան:— Եվ բացի այդ... ներիր ինձ:

— Ուրեմն դու ինձ համա՞ր ես այդքան չարչարվել: Վա՜յ, ծնկներդ ամբողջովին ճանկռոտվել են:

— Գիտես, Անուշի՛կ, ես այն դիտավորյալ չարեցի: Ես կարծում էի՝ դու ալբոմը կփախցնես,— բացատրում էր Սեդան:

Անուշիկը նայեց ընկերուհու հոգնած, հուզված դեմքին և փաթաթվեց Սեդային:

*
* *

Ջոկատը էքսկուրսիայից վերադարձել էր ճամբար:

Ահա Անուշիկը ալբոմի այն էջի վրա, որտեղ փակցրել էր Սեդայի նվիրած թիթեռը, գրում էր.

«Այս թիթեռը Սեդան նվիրեց ինձ, նա ամբողջ օրը վազվզել էր թիթեռի ետևից, նա ինձ համար այնքա՜ն շատ է չարչարվել... Ի՜նչ լավն է Սեդան...»

Հետո բացեց ալբոմի չարաբաստիկ էջը, մի խոշոր տերև ամուր-ամուր փակցրեց էջի վրա: Տերևի տակ ծածկվեցին և՛ ջարդված թիթեռը, և՛ մակագրությունը: Հետո վերցրեց կապույտ գույնի մատիտը և գեղեցիկ տառերով գրեց. «Լավ, մեծ տերև»:

Իրոք տերևը մեծ էր, նա ամբողջովին ծածկել էր այն անախորժ դեպքի հետքերը:

# ԱՄԱՌԸ ՃԱՄԲԱՐՈՒՄ

Ռ. ԿԱՍՊՅԱՆ

Նկ. Ռ. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆԻ

Ամառ, ամա՜ռ է ճամբարում
Ուրախ, զվարթ օրեր...
Վառ խարույկն է լուսավորում
Զվարթ դեմքերը մեր:

Ձորակում գետն է կարկաչում՝
Դեբետը ջինջ ու պաղ.
Մենք խաղում ենք բակ կանաչում,
Գետում լողում ուրախ:

Ամառ, ամա՜ռ է ճամբարում,
Չորս կողմ՝ ծփուն արտեր.
Ճամբարի մոտ, լայն դաշտերում
Հունձ են անում արդեն:

Մենք հանգստի ժամից հետո,
Շեկ արտերի ծովում,
Միշտ աշխատում ենք ջոկատով,
Մեզ բոլորն են գովում:

Ամառ է, ամա՜ռ է ճամբարում...
Ջա՜ն, երջանիկ ամառ,
Ուժ ու եռանդ ենք հավաքում
Սովորելու համար:



# ՓՈՔՐԻԿ ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐ

Լ. ՀՈՒՐՈՒՆՑ

Ռկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ԱՆՏՈՆՈՎԿԱ

Աղբյուրի մոտ նստած էր մի տղա: Նա ճիպոտով փորփրում էր հողը և մտածկոտ նայում կարկաչող ջրին: Ես նստեցի նրա կողքին: Տղան համառորեն փորփրում էր հողը: Նրան մեկնեցի այն խնձորը, որ հենց նոր էր ինձ տվել այգեպանը: Տղան նայեց ինձ և առանց տատանվելու վերցրեց խնձորը:



— Անտոնովկա՞ է,— հարցրեց նա:

— Այո, Անտոնովկա,— պատասխանեցի ես:— Դա ինձ մի ծերունի նվիրեց, ա՛յ, այն այգում:— Եվ ցույց տվի սարալանջը, որը ծածկված էր ծառերի կանաչ շարքերով:

— Դա մեր կոլտնտեսության այգին է,— ասաց տղան և մի քիչ լռելուց հետո ավելացրեց.— այնտեղ իմ հայրն է աշխատում: Նա մեզ մոտ ոնց որ Միչուրին լինի: Տեսա՞ք ի՛նչ խնձորներ կան այնտեղ:

Տղան 'խնձորից մի կտոր կծեց և լեզվով նշանակալից չպպացրեց.

— Իսկ ինչ համ ունի՛. ոնց որ շաք-թուք լինի:

— Կարծեմ քեզ խանգարեցի,— ասացի ես:

Տղան չպատասխանեց: Մի քանի րոպե լռություն տիրեց:

— Իսկ ի՞նչ կլինի, եթե անունը Անտոնովկա դնենք,— խոսեց հանկարծ տղան, և նրա աչքերն ուրախությունից փայլեցին:

— Ո՞ւմ անունը,— չհասկացա ես:

— Հորթի, ում.— տղան վեր թռավ տեղից:— Մեր ջոկատը վերցրել է հորթերի շեֆությունը... Ուզո՞ւմ եք ձեզ ցույց տամ իմ ենթաշեֆայիններին:

Նոր միայն նկատեցի, որ նրա կրծքին վառվում է պիոներական վզկապը: Նա ինձ տարավ իր ետևից, վազելով լեռն ի վեր տանող կածանով:

Կանաչ մարգագետնում տեսանք ենթաշեֆայիններին: Վեց փոքրիկ հորթ միմյանց կողերին էին դրել իրենց փափուկ, չարաճճի դնչերը: Տղան իր մոտ կանչեց հորթին, որին հավանաբար այսօր էին դուրս բերել հորթանոցից: Հորթուկը ծիծաղելի կերպով առաջ էր գցում երկար, չծալվող ոտքերը և ողջ շրջապատին նայում էր զարմացած, լայն բաց արած աչքերով: Տղան ձեռքով շոյեց հորթուկի մետաքսյա մեջքը, և ես տեսա, թե ինչպես մեջքը ծածկվեց խնձոր հիշեցնող գորշ բծերով:

— Հարմա՞ր է անունը,— հարցրեց տղան հրճվանքի ժպիտով:

— Հարմար է,— պատասխանեցի ես:

— Ուրեմն, Անտո՞նովկա:

— Անտոնովկա,— համաձայնվեցի ես պատրաստակամությամբ: Հորթին բաց թողնելով, տղան ասաց.

— Իսկ հիմա գնանք, ցույց տամ նրանց տունը...

# ԱՄՈՓՆՅԱ ՏՈՒՆԸ

Գյուղի ծայրին կար մի ձորակ: Դա փորել էր փոքրիկ, կարկաչահոս առուն: Գարնանը առուն հեղեղներից հորդանում էր: Տարեց-տարի ձորակը հետզհետե ավելի էր բարձրանում լեռան լանջն ի վեր, մտնում կոլտնտեսականների տների տակ: Սիրանուշ տատի տունը գտնվում էր զառիվայրի եզրին: Վտանգավոր ձորակը մոտենում էր նրա տնամերձին: Պառավը տագնապով էր նայում շարունակ փլչող ափին: Նա արդեն մտադիր էր օգնություն խնդրել կոլտնտեսության վարչությունից, երբ հանկարծ իր տան մոտ երեխաների մի աղմկող խումբ տեսավ:

— Այդ ի՞նչ եք կորցրել, երեխանե՛ր,— հարցրեց նա:

— Ափն ենք ամրացնում, Սիրանո՛ւշ մորաքույր,— պատասխանեցին երեխաները,— որ դու հանկարծ ձորի հատակը չսլանաս սահնակ նստած մարդու պես:

— Հոգատարության համար շնորհակալ եմ, երեխանե՛ր,— ասաց պառավը:— Բայց ինչպե՞ս եք ամրացնելու ափը: Ինչ-որ ճյուղեր եք տնկում և կարծում եք, թե դրանով կախարդում եք ձորակը, որ չփլչի:

— Գիտությունը, Սիրանո՛ւշ մորաքույր,— բոլորի փոխարեն պատասխանեց կլոր գլխով մի տղա,— գիտությունն ամեն ինչ կարող է անել: Ա՛յ, արմատ կգցեն մեր տնկիները, այն ժամանակ ինքներդ կտեսնեք, թե նրանք ինչպես են կախարդում...

Պառավը հուզվեց:

— Գոնե զգուշացնեիք, որ մի բանով հյուրասիրեի:

— Մենք հյուրասիրվելու համար չենք աշխատում, տատի,— միջամտեց մազերի փոքրիկ հյուսերը մեջքին զցած մի աղջիկ:— Պիոներական ջոկատի որոշմամբ ամբողջ ափն ենք ամրացնելու: Ձեր տնից սկսեցինք, որովհետև ձեր որդիները բանակումն են, իսկ բանակայինների ընտանիքներին մենք առաջին հերթին ենք օգնություն ցույց տալիս:

Պառավը սրբեց ուրախության արցունքը:

— Շնորհակալ եմ, զավակնե՛րս: Թող ձեր ջոկատը միշտ ուրախ օրեր տեսնի:

Տնկիներն արմատ գցեցին, ափը դադարեց փուլ գալուց, ծառերն ընդհատեցին ձորակի վտանգավոր գործը: Այժմ պառավի ամբողջ տունը թաղված է կանաչի մեջ:

Սիրանուշ տատի երկու որդիներն էլ վերադարձան Սովետական բանակից: Նրանք գտան ափն ամրացնող երե-



խաներին և շնորհակալություն հայտնեցին: Բայց պիոներներն արդեն մեծացել էին, ինչպես իրենց տնկած ծառերը:

Նրանք արդեն կոմերիտականներ էին դարձել:

# ԲՈՒՍԱԲԱՆԱԿԱՆ ԱՅԳՈՒՄ

ՍԱՐՄԵՆ

Ֆոտո Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

Անապատ էր այստեղ մի օր,
Ո՛չ ծաղիկ կար, ո՛չ կանաչ,
Հողն էր ծարավ, հողն էր տոչոր,
Ո՛չ կակաչ կար, ո՛չ կարկաչ:

Հիմա փռվել է դաշտն անծիր,
Ձորս կողմ կանաչն է ծփում,
Ծիծաղում են ծաղիկ ու ծիլ,
Արևն ոսկի է թափում:

Առվակների ցանցերը խիտ
Տարածվել են ողջ այգում,
Աղբյուրները մշտաժպիտ
Քրչքրչում են ու երգում:

Հեռու, հեռու երկրներից
Բերված տունկերն անհամար
Օրորվում են սարի հովից,
Ապրում ինչպես քույր-եղբայր:

Այնքա՜ն զով է, ստվերաշատ,
Բարդիների ծառուղին...
Ծաղիկների բուրմունքն առատ
Հմայում է նայողին:

Սփվում են բլրի փեշին
Այնքան ծաղիկ, թուփ ու ծառ,
Էլ չի տանջի բանձր փոշին
Մանուկներին մեր պայծառ:



Ով ուզում է ծանոթանալ
Ամեն ծառին ու ծաղկին,
Բնության մեջ հանգստանալ,
Թող մի օր գա այս այգին:

# ՄԱՐՏԱԿԱՆ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Բ. ՄԱՋՄԱՆՅԱՆԻ

*Առավոտ է: Բացում ես աչքերդ, անկողնից վեր թռչում և շտապ հագնվում, պատրաստվում ես լիցքային վարժությունների... Եվ այդ ժամանակ հայացքդ ընկնում է օրացույցին: Օրացույցի թերթիկի վրա մի երիտասարդ մայոր է նկարված: Նրա կրծքին երեք փոքրիկ աստղիկ կա, իսկ աստղերի տակ՝ շքանշանների ժապավեններ: Մոտենում ես ու նկարի տակ կարդում. «Սովետական Միության եռակի Հերոս Իվան Նիկիտիչ Կոժեդուբ»:*

*Օրացույցի թերթիկը փոքր է, նկարն ավելի փոքր, բայց քեզ թվում է, թե առջևդ կանգնած է ինքը հերոսն իր ամուր, գեղեցիկ կազմվածքով: Նայում է քեզ ու ժպտում: Եվ սկսում ես երկար, երկար մտածել Կոժեդուբի մասին: Մտածում ես ու վերհիշում նրա մարտական կյանքը, նրա քաջագործությունները, որոնք նրան արժանացրին այդ մեծ փառքին:*

* * *

Երբ մարտական ուսուցումն ավարտեցին օդաչուների դպրոցում, դեռ ոչ ոք չգիտեր, թե ով ինչպիսի հաջողություն կունենա։ Բոլորի համար մի բան միայն պարզ էր. Հայրենիքը վտանգի մեջ է։ Բոլորն էլ մտածում էին, որքան կարելի է շուտ մեկնել ռազմաճակատ, որքան կարելի է շուտ դուրս գալ ատելի թշնամու դեմ։

Եվ սկսեցին գրել դիմում դիմումի ետևից։ Իսկ նրանց ասում էին.

— Առայժմ մարզվեցեք։

Եվ մարզվում էին օր ու գիշեր, գետնին և օդում, մարզվում էին անդադար։

* * *

Ցանկալի օրը եկավ։ Կոմերիտական արծիվները, մարտական հրաշալի ինքնաթիռներով մերձճակատային օդանավակայան թռան։ Նրանք շատ էին. մի լավ, մեծ ընտանիք։ Այստեղ էր, օրինակ, Կիրիլ Եվստիգնեևը, որ հետո թշնամու հիսուն երկու ինքնաթիռ խփեց և Սովետական Միության կրկնակի Հերոս դարձավ։ Այստեղ էր Լեոնիդ Ամելինը, որ ընկերների մեջ առաջինը թշնամու «Յունկերս» կործանեց։ Այստեղ էր լեյտենանտ Գարունիան՝ մի խելոք և ուրախ տղա։

Նա զորամասում առաջինն էր, որ խոյահարելու գնաց։ Հրանոթների արկերն սպառվել էին, իսկ թշնամուն անպատիժ թողնել չէր կարելի։ Ցամաքային եղբայրները ներքևից ռադիոյով խնդրում էին.

— Տուր դրան, արծի՛վ, շմփացրո՛ւ։

Գարունիայի ինքնաթիռն ահռելի թափով զարկվեց գերմանական ծանր ռմբատարին, թշնամին խորտակվեց, բայց զոհվեց նաև Գարունիան։ Այդ ժամանակ բոլորը հասկացան, որ Գարունիան կյանքից էլ շատ Հայրենիքն էր սիրում։

Այստեղ էր Վասիլի Մուխինը՝ մի համեստ, զվարճասեր մարդ, որ գրեթե բոլոր մարտերում սուրում էր Կոժեդուբի ինքնաթիռի ետևից։ Վասյան Կոժեդուբի «հետնորդն» էր, նրա պարտականությունը Կոժեդուբի թիկունքը պաշտպանելն էր։ Օդանավակայանում ընկերները կատակում էին.

— Իվանը երեք ինքնաթիռ է խփել, մեկուկեսը իրեն, մեկուկեսը՝ Վասյային։

Կատակի մեջ ճշմարիտ շատ բան կար. առանց Վասյայի պաշտպանության Իվան Կոժեդուբն այդքան չէր խփի, և գուցե հենց



իրեն խփեին։ Բայց Վասյայի, Իվանի և բոլորի համար միևնույն էր, թե ով կխփի։ Թշնամու ինքնաթիռը խփված էր, ուրեմն լավ է, իսկ շտաբային մարդիկ թող «հաշվեն ու բաժանեն»։

Երբ պատերազմը վերջացավ, շտաբային մարդիկ վերջնականապես «հաշվեցին ու բաժանեցին»։ Այդ ժամանակ պարզվեց, որ կապիտան Վասիլի Մուխինի «անձնական հաշվում» թշնամու երկու տասնյակ խփած ինքնաթիռ կա։

Ահա այսպիսի մարտական ընտանիքում էր կռվում Իվան Նիկիտիչ Կոժեդուբը։ Այսպիսի ընկերների հետ նա երեք հարյուր երեսուն մարտական թռիչք կատարեց, հարյուր քսան անգամ մարտի մեջ մտավ և կործանեց հակառակորդի վաթսուներկու ինքնաթիռ։

* * *

Առաջին ինքնաթիռը Կոժեդուբը կործանեց 1943 թվականի հուլիսի վեցին։ Թռչում էին խմբով, Բելգորոդ—Կուրսկի ուղղությամբ։ Խումբը զույգերի էր բաժանված։ Յուրաքանչյուր զույգում մեկն «առաջատարն» էր,

մյուսը՝ «հետնորդը»։ Կոժեդուբի «հետնորդը» Վասիլի Մուխինն էր։ Վասյան այն ժամանակ Կոժեդուբի համար նոր մարդ էր։ Այդ կռվում պետք է փորձվեր նրանց մարտական բարեկամությունը։ Ճիշտն ասած, Կոժեդուբը մի փոքր անհանգստացած էր։ «Վասիլին մի անգամ մարտի մեջ ոտքից վիրավորվել է, մտածում էր նա, վերքն ապաքինվել է, բայց ո՞վ է իմանում, արդյոք ծանր հետք չի՞ թողել, արդյոք չի՞ խանգարի մարտում»։ Վասիլի Մուխինն էր։ Վասյան այն ժամանակ չկար։

— Մեզնից ցած, թշնամու քառյոթ ոմբաձիգ՝ կործանիչների ուղեկցությամբ,— ականջակալների մեջ լսվեց հրամանատարի ձայնը։— Ուշադրությո՛ւն, գրոհում ենք։

Կոժեդուբի սիրտը թրթռաց։ «Հիմա, հիմա կպարզվի՝ կարող եմ, թե՞ ոչ»։ Հենց այդ ժամանակ ականջակալների մեջ լսվեց Մուխինի ձայնը.

— Ալո՛, Վանյա՛, թիկունքդ ապահով է, տո՛ւր դրանց։

— Կեցցե՛ս, Վասկա,— ժպտաց Կոժեդուբը, կարծես թե Մուխինը կարող էր տեսնել նրա ժպիտը։

Ինքնաթիռը դեպի վեր խոյացավ, ապա արագությամբ անցավ «Յունկերս»-ներից մեկի թիկունքը։ Երիտասարդ օդաչուն սեղմեց գաշետկաները։ Հրանոթների կրակը «կարեց» թշնամու ինքնաթիռը։ Առաջատարի հաշիվը բացված էր։ Այդ ժամանակ թշնամու կործանիչները թռան Կոժեդուբի ինքնաթիռի կողմը. բայց Մուխինը քնած չէր. մանևրելով միաժամանակ թշնամու երկու ինքնաթիռի հետ էր կռվում։ «Մեսսերշմիդտները» չկարողացան մոտենալ Կոժեդուբի ինքնաթիռին։

«Հետնորդի» հաշիվն էլ էր բացված. այդ կռվում նա առաջին անգամ փրկեց իր «առաջատարին»։

*
* *

Պատերազմի վերջին օրերն էին։ Սովետական Միության եռակի Հերոս Իվան Նիկիտիչ Կոժեդուբն այդ ժամանակ մի ուրիշ օդային միավորման մեջ էր։ Վասիլի Մուխինը նախկին գնդում էր մնացել։ Այժմ նրան փոխարինում էր Դիմա Տիտորենկոն։

Գնդում Դիմային «Ծերուկ» էին կոչում։ Տիտորենկոն, իհարկե, ծերուկ չէր։ Նա երիտասարդ ու գեղեցիկ տղամարդ էր։ Բայց նա այնքան շատ մարտական թռիչքներ էր կատարել, որ ընկերները ժպտալով ասում էին.

— Դիմա՛, ժամանակն է, որ դու հանգստանաս։ Միևնույն է, քո չափ թռչելու համար մեզ յուրաքանչյուրիս երկու հարյուր տարվա կյանք է հարկավոր։

Մի անգամ Իվանն ու «Ծերուկը» «որսի» գնացին։

Նրանք թռչում էին ցածր լողացող ամպերի միջով։ Ներքևում դռռացին քսան զույգ «Ֆոկե-Վուլֆ», որ թռչում էին մերոնց խրամատները ռմբակոծելու։

Երկու և քառասուն, փոքր տարբերություն չէ։ Երկուսով քառասունի դեմ դուրս գալու համար Կոժեդուբի սիրտ պետք է ունենալ։

— Ծերո՛ւկ, գնում են մերոնց ռմբակոծելու։

— Պարզ է։

— Ուրե՞մն։

— Գրոհում ենք, Վա՛նյա։

Երկու «Լավոչկինները» անսպասելիորեն իջան թշնամու խիտ շարքի մեջ։ Գերմանական օդաչուները շփոթվեցին։ Նրանք հո չէ՞ին կարող մտածել, թե սովետական բազեները միայն երկուսն են։

— Դի՛մկա, թիկունքս պահիր,— ասաց Կոժեդուբը։

— Խփիր, Վա՛նյա,— պատասխանեց «Ծերուկն» ու թիկունք անցավ։

Կոժեդուբը ցրեց առաջին էշելոնը և մինչ թշնամին ուշքի կգար, մեկին կործանեց։ Այդ ժամանակ պաշտպանական օղակ կազմեց «Ֆոկե-Վուլֆերի» երկրորդ էշելոնը։ Երկու բազեներն սկսեցին կատաղի պտույտներ գործել։

Ինչպես օդաչուներն են ասում «Ֆոկե-Վուլֆերը» սկսեցին «հաչել»։ Շեկ, դժժացող բզեզների նման արկերը պարում էին բազեների շուրջը։ Բավական էր, որ դրանցից մեկը կպչեր ինքնաթիռի կրծքին, կործանումն անխուսափելի կլիներ։ Բայց խիզախ օդաչուները մանևրում էին ճարպիկ ու համարձակ։

Ուշադրությամբ հետևելով թշնամուն, Կո-

*ժեդուբը նկատեց, որ Տիտորենկոյի դիրքը հարմար է գրոհելու համար։*

*— Գնա, Ծերո՛ւկ, պաշտպանում եմ,— քաջալերիչ տոնով ասաց նա։*

*Մահվան օղակից արագ դուրս գալով, Տիտորենկոն թշնամու ինքնաթիռներից մեկի փորի տակն անցավ։ Լսվեց մի կարճ կրակահերթ։ «Ֆոկե-Վուլֆը» թեքվեց ու ցած սահեց ետևից թանձր ծուխ արձակելով։*

*Տիտորենկոն հազիվ էր ինքնաթիռն ուղղել, երբ նորից լսեց Կոժեդուբի ձայնը.*

*— Կեցցե՛ս, պահի՛ր, գնում եմ։*

*Արագ թռիչքի ժամանակ Կոժեդուբը հանկարծ մի կողմ թեքվեց ու հայտնվեց թշնամու ինքնաթիռներից մեկի ետևը։ Մինչ հակառակորդն ուշքի կգար, նա իր արկերի ամբողջ պաշարը «տեղավորեց» ռմբաձիգի կրծքի մեջ։ Թշնամու ինքնաթիռը պայթեց օդում։ Արկերը վերջացան. բայց օդային մարտն էլ վերջացավ։ Թշնամու քառասուն ռմբաձիգներից ոչ մեկը նպատակին չհասավ։ Ռումբերը սեփական զորքի վրա թափելով, նրանք թողեցին մարտադաշտը։*

*Բազեները դեպի օդանավակայան շրջվեցին։ Հարկավոր էր շտապել, արդեն բենզինի վերջին պաշարներն էին այրվում, արդեն մոտորները ընդհատումներով էին աշխատում, իսկ թշնամու արկերից ինքնաթիռների թևերի վրա բացված անցքերում կատաղի սուլում էր քամին։*

* * *

*Առավոտ է։ Բացում ես աչքերդ։ Անկողնից վեր ես թռչում։ Պատրաստվում ես լիցքային վարժություններին։ Եվ այդ ժամանակ հայացքդ ընկնում է օրացույցին։ Օրացույցի թերթիկից քեզ է նայում Սովետական Միության եռակի Հերոս Իվան Նիկիտիչ Կոժեդուբը։ Մոտենում ես։ Օրացույցի թերթիկը փոքր է, նկարն՝ ավելի փոքր. բայց քեզ թվում է,*



*թե առջևդ կանգնած է ինքը՝ հերոսն իր մարտական ընկերների հետ։ Կարծես թե տեսնում ես խիզախ բազեների ամբողջ ընտանիքը։ Ու ինքդ քեզ, մտքումդ որոշում ես… Որոշում ես այնպիսի բան, որ դեռ չես համարձակվում բարձրաձայն ասել… Որոշում ես դառնալ հերոս։*

*Եվ կդառնաս, եթե իսկապես պիոներ ես՝ պատանի լենինյան։*

# ԳԻՇԵՐ

Անհուն երկնքի կապույտ լազուրում՝
Առկայծող սիրուն, վառ աստղերի մեջ,
Անդորր հայացքով լուսինն է սահում,
Անցնում իր անցած նույն ուղին անվերջ։

Եվ կես գիշերվա լռության պահին,
Անշշուկ նիրհող բնության գրկում,
Անշարժացել է միշտ անհուն ճամփին.
Անանց լռությամբ գիշերն է նիրհում։

Ժպտուն հայացքով լուսինն է սահում
Դարերով անցած նույն ճամփով անվերջ,
Եվ ինձ նա այնպես պայծառ է թվում
Այս մութ գիշերվա խոր լռության մեջ։

*ԱՐՄԵՆԱԿ ՂԱԶԻՆՅԱՆ*

*(Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղի դպրոցի 5-րդ դասարանի աշակերտ)*

# ՃԱՆՃՆ ՈՒ ՄՈԾԱԿԸ

*Ռ. ՄԻՐԶՈՅԱՆ*

Մի օր կեսօրին
Մեր ճանճուկ քեռին
Հազիվ ազատված մարդկանց թակարդից,
Հոգնած ու քաղցած, զրկված հանգստից,
Դես ու դեն ընկավ, որ մեկին գտնի
Ու իր վշտերը մեկ առ մեկ պատմի:
Ու մեկ էլ հանկարծ,
Իրենից քիչ ցած
Հնչեց տխուր ու ցավագին մի երգ,
Որի նմանը չէր լսել երբեք.
Մի պահ անամոք վիշտը մոռացավ
Եվ իր բարեկամ մոծակին դարձավ:
— Այդ ի՞նչ է եղել.
Քեզ նման անեղ
Կտրիճն էլ արդյոք վշտե՞ր կունենա,
Չէ՞ որ սարսափ ես սփռում անխնա:
— Է՛հ, իմ անուշի՜կ,
Մի խոսքիս մտիկ.
Էլ ես ի՞նչ սարսափ կարող եմ սփռել,
Երբ հալածում է մարդն ինձ ամեն տեղ...
— Վա՜յ ինձ... դո՞ւ էլ ես իմ օրին ընկել,
Բա ինչպե՞ս գտնենք փրկության մի դեղ:
— Ես գիտեմ դեղը,
Բայց մոտ չի տեղը:
— Թե որ մեր ցեղին դեղ կա փրկարար
Մոտ լինի, հեռու՝ մեկ է ինձ համար:
— Դե որ այդպես է, արի շուտ թռչենք
Ու մեր ցեղապետ Տրումենին հասնենք:
— Մեր գործի համար
Նա անչափ հարմար
Հնար է գտել մեծ տառապանքով,
Մեզ էլ կընդունի սիրալիր կերպով.
Ու քեզ հետ մեկտեղ ազատ ու անահ
Կորեայում մենք կփռենք միշտ մահ:
— Բայց մոռանում ես,
Որ այնտեղ էլ մեզ
Ե՛վ հալածում են, և՛ բնաջնջում,
Ա՜խ, մի՞թե ուրիշ հնար չես գտնում:
— Լսիր բարեկամ,
Մեր պետի նման
Չէ՞ որ կյանքներս մենք կերկարացնենք,
Հետո բեկուզ և իսպառ ջնջվենք...
Մեկ է փրկություն չկա մեր ցեղին
Քանի որ շա՜տ է զորեղ թշնամին:



Ամբողջ աշխարհը վրդովված է ամերիկյան մարդասպանների բարբարոսություններից, որ կատարում են նրանք Կորեայի խաղաղասեր ժողովրդի դեմ: Հազարավոր ծերունիներ, կանայք ու երեխաներ ամերիկացիների արյունոտ հանցագործությունների զոհեր են դարձել:
ՆԿԱՐՈՒՄ՝ Կորեացի որբ երեխաներ, նրանց ծնողները զոհվել են ամերիկյան օդաչուների նետած ռումբերից:

*(Ֆոտոխրոնիկա ՏԱՍՍ)*

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՄԱՐՏԻԿՆԵՐԸ

*Յ. ՇՈՂԵՆՑ*

1951 թվականի դեկտեմբերին Մոսկվայում ժողովուրդների միջև խաղաղության ամրապնդման համար Միջազգային Ստալինյան մրցանակի կոմիտեն որոշեց՝ Միջազգային Ստալինյան մրցանակներ շնորհել խաղաղության մարտիկներ՝ Գո Մո-ժոյին, Պյետրո Նեննիին, Իկուո Օյամային, Մոնիկա Ֆելտոնին, Աննա Զեգերսին և Ժորժի Ամադուին:

Աշխարհի ժողովուրդները մեծ սիրով ու ջերմությամբ ընդունեցին այդ որոշումը:

Ահա այդ նշանավոր մարդիկ, որոնք խաղաղության համար մղած իրենց անձնուրաց պայքարով արժանացել են բոլոր ժողովուրդների սիրուն ու հարգանքին:

## ԳՈ ՄՈ-ԺՈ

Գո Մո-ժոն հայտնի չին բանաստեղծ է, արձակագիր, գիտնական և հասարակական գործիչ։ 1919 թվականին նա չինական նոր գրականության հիմնադիր Լու Սինի հետ միասին ողջունել է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և այնուհետև գովերգել նրա նվաճումները։ Նա ուզում էր, որ Չինաստանում էլ այդպիսի կարգեր հաստատվեն։ Չինաստանում բռնկած ռևոլյուցիոն շարժումներին մասնակցելու համար Գո Մո-ժոն 1925—1927 թվականներին ենթարկվել է այն ժամանակվա հակառևոլյուցիոն կառավարության հալածանքներին։ Նա ստիպված է եղել երկար ժամանակ ապրել հայրենիքից դուրս։ 1945 թվականին Գո Մո-ժոն ճանապարհորդեց Սովետական երկրում և գրեց «50 օր Սովետական Միությունում» գիրքը, որտեղ պատմում էր մեր հայրենիքի ժողովուրդների վերածնված կյանքի մասին։ Ժողովրդական կարգերի հաղթանակից հետո, Գո Մո-ժոն Չինաստանում մեծ աշխատանք ծավալեց նոր կյանքի կառուցման համար։ Նա այժմ իր բոցավառ հոդվածներով, գրքերով ու ելույթներով պայքարում է Ամերիկայի և Անգլիայի պատերազմի հրձիգների դեմ։ Գո Մո-ժոն շատ հասարակական աշխատանքներ է տանում։ Նա Չինաստանի խաղաղության պաշտպանության և ամերիկյան ագրեսիայի դեմ մղվող պայքարի կոմիտեի նախագահն է, Չինաստանի Գիտությունների Ակադեմիայի պրեզիդենտը։



## ՊՅԵՏՐՈ ՆԵՆՆԻ

Ամբողջ աշխարհում խաղաղության կողմնակիցների շարժումն սկսելու առաջին իսկ օրից Պյետրո Նեննին գլխավորում է Իտալիայի խաղաղության կողմնակիցների Ազգային կոմիտեի աշխատանքը։ Նա միաձայն ընտրվել է Խաղաղության Համաշխարհային Խորհրդի նախագահի տեղակալ։

Պյետրո Նեննին բուրժուական կառավարության մինիստրի պոստից հրաժարվել է, որպեսզի ծառայի իր ժողովրդին։ Ռևոլյուցիոն շարժումներին մասնակցելու համար նա դեռ 1908 թվականից հալածվել և բանտարկվել է։ Նեննին խմբագրել է «Ավանտի» («Առաջ») թերթը, որի էջերում մերկացրել է ֆաշիստական կառավարողների հանցագործությունները։ Դրա համար ֆաշիստները նրան շատ անգամ ձերբակալել են։ Նեննին բանտից փախել է և թաքնվել Ֆրանսիայում։



Երբ 1936 թվականին սկսվեց քաղաքացիական պատերազմը Իսպանիայում, Պյետրո Նեննին զենքը ձեռքին երկու տարի շարունակ պայքարում էր ֆաշիստական ավա-

պակախմբերի դեմ։ Պատերազմում նա մի քանի անգամ վիրավորվել է։

Երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում Պյետրո Նեննին Ֆրանսիայում ելույթներ էր ունենում հիտլերյան Գերմանիայի դեմ։

Այն ժամանակվա Ֆրանսիայի դավաճան կառավարողները Պյետրո Նեննիին բանտարկեցին և հանձնեցին իտալական ֆաշիստներին։ Մոտ 17 տարի շարունակ Իտալիայից արտաքսված լինելուց հետո, նա հայրենիք է վերադառնում շղթայակապ։ Ֆաշիստները դաժան դատաստան տեսան Նեննիի ընտանիքի հետ։ Նրա դուստրը սպանեցին Օսվենցիմի մահվան ճամբարում։

Հիտլերյան Գերմանիայի և ֆաշիստական Իտալիայի պարտությունից հետո, Պյետրո Նեննին բանտից ազատվեց, և ավելի ակտիվ կերպով շարունակեց պայքարը խաղաղության համար։

## ԻԿՈՒՈ ՕՅԱՄԱ

Իկուո Օյաման ճապոնական հասարակական գործիչ և նշանավոր գիտնական է, համալսարանի պրոֆեսոր։ Դեռ առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ նա հանդես էր գալիս իմպերիալիստական պետությունների դեմ, որոնք պատերազմի միջոցով ձգտում էին վերաբաժանել աշխարհը և մեծ շահույթներ ստանալ։



Նա խմբագրում է Ճապոնիայի առաջադիմական «Օսակա Մայնիչի» թերթը։ Դրա միջոցով նա պայքարում է ժողովրդի իրավունքների պաշտպանության համար. իսկ երբ 1931 թվականին ճապոնական նվաճողները պատերազմ սկսեցին Չինաստանի դեմ, Իկուո Օյաման հանդես եկավ ճապոնական ռազմամոլների դեմ։

Երկար տարիներ նա ապրում էր արտասահմանում և պայքարում պատերազմի հրձիգների դեմ։ Երկրորդ համաշխարհային պատերազմն ավարտվելուց հետո, նա վերադարձավ հայրենիք և գլխավորեց խաղաղության կողմնակիցների շարժումը։ Օյաման դարձավ դեմոկրատիայի պաշտպանության լիգայի կազմակերպիչներից ու առաջնորդներից մեկը։ Այդ կազմակերպության մեջ ավելի քան 10 միլիոն մարդ կա։ 1949 թվականին Օյամայի նախաձեռնությամբ Ճապոնիայում տեղի ունեցավ խաղաղության կողմնակիցների առաջին կոնգրեսը։ Մի տարի հետո ժողովուրդը նրան նորից ընտրեց ճապոնական պառլամենտի դեպուտատ։ Պառլամենտական ամբիոնից նա ժողովրդին կոչ է անում պայքարել խաղաղության ամրապնդման համար։ Նա սովետական և Չինաստանի ժողովուրդների բոցավառ բարեկամն է։

## ՄՈՆԻԿԱ ՖԵԼՏՈՆ

Անգլիական ժողովրդի լավագույն զավակների թվին է պատկանում Մոնիկա Ֆելտոնը։ Նա այցելեց կորեական ռազմաճակատը, անձամբ տեսավ հերոս ժողովրդի տառապանքները և ամերիկյան ու անգլիական զավթիչների չարագործությունները և ամբողջ աշխարհով մեկ իր ձայնը բարձրացրեց կորեական աշխատավորների պաշտպանության համար։



Ֆելտոնը երկար տարիներ, որպես ճարտարապետ, աշխատել է քաղաքային շինարարության վրա, ինչպես նաև մասնակցել հասարակական խոշոր կազմակերպությունների աշխատանքներին։ Նա շատ բան է արել Անգլիայում խաղաղության կողմնակիցների կազմակերպություններում ժողովրդական լայն մասսաներին ընդգրկելու համար։ Անգլիայի կառավարությունը շարունակում է հալածել Ֆելտոնին։ Նրան ազատել են աշխատանքից և նրա դեմ դատ հարուցել։ Բայց նա չի վհատվում և շրջելով Անգ-

լիայում, բոցավառ ելույթներ է ունենում նոր պատերազմի հրձիգների դեմ, մերկացնում կորեական ժողովրդին բնաջնջման ենթարկող ամերիկյան իմպերիալիստներին։ Այդ պատճառով էլ այժմ Անգլիայում Ցելտոնին ժողովուրդը շատ է սիրում։ Անգլիայի բոլոր քաղաքներից ու ավաններից նա ամեն օր ստանում է հարյուրավոր նամակներ, որոնց մեջ հեղինակները ոգեշնչում են Ցելտոնին խաղաղության և դեմոկրատիայի համար մղվող մեծ պայքարում։

## ԱՆՆԱ ԶԵԳԵՐՍ

Գրող, հասարակական ակտիվ գործիչ և պատերազմի հրձիգների դեմ մղվող պայքարի անձնուրաց մարտիկն է Աննա Զեգերսը։ Նրա վեպերը, պատմվածքները, հոդվածները սիրով են կարդում ոչ միայն Գերմանիայում, այլև ուրիշ երկրներում։ Երբ Գերմանիայում Հիտլերը իշխանության գլուխ անցավ, Զեգերսը՝ գերմանական մյուս կոմունիստ գրողների հետ միասին, ապրում էր իր հայրենիքից դուրս և գրում իր հակաֆաշիստական գրքերը (օրինակ՝ «Յոթերորդ խաչը»)։ Ֆաշիզմի ջախջախումից հետո, Զեգերսը նորից վերադարձավ Գերմանիա և ակտիվ կերպով աշխատում է նոր ժողովրդական Գերմանիայի կառուցման համար։ Նա գրել է «Սովետական մարդիկ» գիրքը, որտեղ ամփոփել է Սովետական Միությունում իր ստացած վառ տպավորությունները։ Իսկ 1949 թվականին իր «Մեռածները մնում են երիտասարդ» վեպում Զեգերսն անխնա մերկացնում է պատերազմի հրձիգների դավադրությունները։ Նա իր գրքում փառաբանում է Սովետական Բանակը, որը փրկել է գերմանական ժողովրդին՝ ֆաշիստական բարբարոսների դժոխքից։ Նա վերջին շրջանում պատմվածքների ժողովածու է գրել՝ նվիրված ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինին։



## ԺՈՐԺԻ ԱՄԱԴՈՒ

Ժորժի Ամադուն Բրազիլիայի հռչակավոր բանաստեղծն է։ Նա իր խոսքով պայքարում է հայրենիքը ստրկացնողների դեմ։

Ամադուն ծնվել է աշխատավորի ընտանիքում։ Նա սըրտաբուխ երգեր է գրել Բրազիլիայի հասարակ մարդկանց տառապանքների մասին։ Նա գրել է նաև «Կակաո» և «Կարմիր ծիլեր» վեպերը։ Դըրանցում նա նկարագրում է, թե ինչպես Ամերիկայի իմպերիալիստները հարստահարում ու շահագործում են Բրազիլիայի աշխատավորներին։ Ամադուն երկու գիրք է գրել Բրազիլիայի հայտնի բանաստեղծ Կաստրո Ալվեսի մասին, որը իր կյանքը նվիրել է ժողովրդի ազատագրության գործին։ 1945 թվականին բրազիլիական ժողովուրդը Ամադուին ընտրել է Ազգային կոնգրեսի դեպուտատ։ Նա միաժամանակ «Օժե» թերթի խմբագիրն է, որի միջոցով նա հարվածում է խաղաղության թշնամիներին։ Նա ընտրվել է Սովետական Միության հետ կուլտուրական կապի ընկերության քարտուղար և Բրազիլիայի Գրողների Միության նախագահի տեղակալ։



Ժորժի Ամադուն այժմ էլ հանդես է գալիս ամերիկյան իմպերիալիստների զավթողական ձգտումների դեմ։ Նա միաժամանակ, որպես սովետական ժողովրդի բարեկամ, պրոպագանդում է նրա մեծ նվաճումները կոմունիզմի կառուցման գործում։

Ժորժի Ամադուն խաղաղության համաշխարհային խորհրդի անդամ է։

# Ճարտար ձեռքերի ճարիքը

Պիոներական նշան, աշխատանք Բերիայի անվան դպրոցի աշակերտուհի Ն. Միրզոյանի (1).

Նախշակար, Կույբիշևայի անվան դպրոցի աշակերտուհի Օ. Կյուրեղյանի (2).

Անկողնազարդ թաշկինակ, աշխատանք 47-րդ դպրոցի աշակերտուհի Ա. Սանիկյանի (3).

Հարթակար, Գալոյանի անվան դպրոցի աշակերտուհի Վ. Նազարյանի (4).

Ցողունակար, 51-րդ դպրոցի աշակերտուհի Մ. Խաչիկյանի (5).

Լիցքակար, 27-րդ դպրոցի աշակերտուհի Ս. Մանուկյանի (6).

Կանվա, Բերիայի անվան դպրոցի աշակերտուհի Թ. Գասպարյանի (7).

Լիցքակար, 27-րդ դպրոցի աշակերտուհի Մ. Ղազարյանի (8).

Հալվակար, Բերիայի անվան դպրոցի աշակերտուհի Զ. Ղազարյանի (9).

Անկողնազարդ, Բերիայի անվան դպրոցի աշակերտուհի Լ. Վարդանյանի (10).

Տյուլի թաշկինակ, աշխատանք Բերիայի անվան դպրոցի աշակերտուհի Ն. Փամբուկչյանի (11).

Ծաղկալիցք, Բերիայի անվան դպրոցի աշակերտուհի Կ. Գրիգորյանի (12).

Տյուլի թաշկինակ, աշխատանք Բերիայի անվան դպրոցի աշակերտուհի Թ. Հովհաննիսյանի (13).

Նախշակար, Գալոյանի անվան դպրոցի աշակերտուհի Ս. Մարտիրոսյանի (14).

Հալվակար, Շևչենկոյի անվան դպրոցի աշակերտուհի Ա. Բաղարկյանի (15).

Ցողունակար, Բերիայի անվան դպրոցի աշակերտուհի Ս. Գասպարյանի (16).

Հարթակար, Գալոյանի անվան դպրոցի աշակերտուհի Մ. Կարապետյանի (17).

Լիցք, Գևորգյանի անվան դպրոցի աշակերտուհի Ա. Միկոյանի (18).

Անկողնազարդ, 47-րդ դպրոցի աշակերտուհի Հ. Մակարյանի (19).

# ՄՈՍԿՎԱՅԻ ԱՆՎԱՆ ՋՐԱՆՑՔԸ

*ՀՐ. ԲԱԳՐԱՏՅԱՆ*

Վոլգան փայլփլում է հուլիսյան վառ արևի ճառագայթների տակ:

Մեծ ու գեղեցիկ ջերմանավը ռուսական մայր գետի վրայով սլանում է դեպի վեր: Նավի շուրջը ճողփում են կանաչ ալիքները: Մեր առջև բացվում է մի վեհ տեսարան:

Բետոնե ամբարտակը փակում է գետի լայն հունը, կասկադներով գահավեժ ցած է թափվում ջուրը, օդում զգացվում է ջրի մանր փոշին, ալեկոծվում, փրփրում է Վոլգան: Ջերմանավը դեպի աջ է թեքվում: Լսվում է շչակի սուլոց: Նավի առջև դանդաղորեն բացվում է հսկայական դարբասը և նավը հանդիսավորությամբ ներս է մտնում շլյուզների կամարների տակով. սկսվում է շլյուզանցումը: Ղեկավարման կետում կանգնած



մարդը սեղմում է էլեկտրական կոճակը և ջերմանավը ուղևորների հետ միասին սկսում է բարձրանալ՝ ինչպես լիֆտով: Մոսկվայի ծովից ջուրը լցվում է կամերաների մեջ, հետո կամերաների ջրի մակերեսը հավասարվում է Մոսկվայի ծովին: Վերևի դարբասները բացվում են և նավը մտնում է առաջին նավահանգիստը: Ծովի կապույտում խաղում են ալիքները, կատարները ետ ու առաջ են լողում, բուքսիրային նավերը քաշում են բեռնանավերը: Դարբասներից ներքև ճախրում են սպիտակակուրծք ճայերը, հաճելի սուլում է ծովային քամին: Ջերմանավը վաղուց արդեն լողում է Մոսկվայի ծովով, որը ստեղծված է սովետական մարդկանց կարող ձեռքերով:

Հանկարծ հորիզոնում հայտնվում են նոր, գեղեցիկ շլյուզային սպիտակ կառուցվածքները, պոմպային կայանները: Ջրային ճանապարհի կապույտ ժապավենը ձգվում է հարյուրքսանուր կիլոմետր երկարությամբ և անցնում է Կրեմլի վեհ պարիսպների մոտով, գնում է դեպի մեր հայրենիքի մայրաքաղաքը:

Մոսկվա հասնելու համար, ջերմանավը շլյուզների աստիճաններով երեսուն մետր բարձրանում է...

Տասնհինգ տարի առաջ, 1937 թվականի հուլիսի տասնհինգին, ավարտվեց ստալինյան երկրորդ հնգամյակի հրաշալի կառուցումներից մեկը՝ Մոսկվայի անվան ջրանցքը: Այդ ջրանցքը կառուցվեց ընկեր Ստալինի նախաձեռնությամբ և շատ կարճ ժամանակամիջոցում՝ չորս տարում: Իսկ Սուեզի և Պանամայի ջրանցքները կառուցվել են տասնյակ տարիների ընթացքում:

Ստալինի անվան Սպիտակ-Բալթիկ ծովի և Սուեզի ջրանցքներից հետո Մոսկվայի անվան ջրանցքն ամենամեծն է ամբողջ աշխարհում: Այդ ջրանցքի վրա կատարած հերոսական աշխատանքի մեծությունը պատկերացնելու համար, բավական է ասել, որ չորս տարվա ընթացքում ջրանցքի տրասսաներից հանված է երկու հարյուր միլիոն խորանարդ մետր հող և երեք միլիոն խորանարդ մետր բետոն է լցված: Շինարարական աշխատանքների համար գործածված է ութ հարյուր յոթանասուն հազար տոննա ցեմենտ, հարյուր յոթանասուն հազար վագոն երկաթ, հարյուր ութսուն հազար վագոն անտառանյութ, վեց հարյուր հազար վագոն քար, խիճ և այլ շինանյութեր: Եթե այս բոլոր շինանյութերը և դուրս հանած հողը բարձենք մի գնացքի

վրա, ապա նա կձգվի Մինսկից մինչև Վլադիվոստոկ և նորից ետ կվերադառնա։

Ջրանցքի վրա կա հինգ հզոր պոմպային կայան, ուր էլեկտրակայան, տասնմեկ ամբարտակ, տասնմեկ շլյուզ, յոթ երկաթուղային կամուրջ և այլն։

Մոսկվայի անվան ջրանցքը ամենագեղեցիկն է աշխարհում։ Այստեղ շլյուզների աշխատանքը ամբողջովին ավտոմատացված է։ Պոմպային կայանների աշխատանքները ղեկավարվում է մի կետից, էլեկտրական մի հասարակ կոճակի սեղմումով։ Լուսավոր սխեմայի միջոցով, որ վառվում է կարմրագույն վահանի վրա, ղեկավարը իմանում է, թե ինչ է կատարվում յուրաքանչյուր պոմպային կայանում։ Նա իմանում է, թե որ շլյուզում ինչ մակարդակի վրա է գտնվում ջուրը և ինչպես են աշխատում սարքավորումները։

Մոսկվայի անվան ջրանցքը մեծ նշանակություն ունի մեր երկրի համար. նա ոչ միայն ջրային հարմար ճանապարհ է Վոլգայից մինչև Մոսկվա և էժանագին էլեկտրական էներգիա ու խմելու ջուր է տալիս Մոսկվայի բնակիչներին, այլև մի դպրոց է կոմունիզմի մեծ կառուցումների շինարարների համար։

Մոսկվայի անվան ջրանցքի շինարարության փորձի հիման վրա սովորել և սովորում է բանվորների, տեխնիկների, ինժեներների մի հսկա բանակ, որն այժմ աշխատում է Վոլգա-Դոնի, Կույբիշևի, Ստալինգրադի, Կախովկայի, Հարավ-Ուկրաինական, Հյուսիս-Ղրիմյան և Գլխավոր Թուրքմենական կառուցումներում։

Ջրանցքների շինարարության տեխնիկայի մեջ առաջին անգամ Մոսկվայի անվան ջրանցքում գործադրվեցին հսկայական հողափոր մեքենաներ ու էքսկավատորներ։ Այժմ այդ բոլոր մեքենաները ավելի են կատարելագործված և օգտագործվում են կոմունիզմի մեծ կառուցումների շինարարության վրա։

Եթե Վոլգայից մինչև Մոսկվա ձգված ջրանցքի շինարարության վրա էքսկավատորների կողքին հանդիպում էինք դեռ բահերի, ֆլուգների, և ձեռքի սայլակների, ապա այժմ Ստալինյան մեծ կառուցումներում գործում են միայն հզոր մեքենաներ։ Մի՞թե Մոսկվայի անվան ջրանցքի շինարարները այն ժամանակ կարող էին երազել ժամանակակից այնպիսի մեքենաների մասին, ինչպիսիք են քայլող և միանգամից տասնյակ խորանարդ մետր հող վերցնող էքսկավատորները, հողածծիչ մեքենան, քսանհինգ տոննա ծանրություն տեղափոխող ավտոմեքենան, բազմաշերեփ էքսկավատորներ և ուրիշ մեքենաներ։

Շարունակենք մեր հրաշալի ճանապարհորդությունը ջրանցքով։ Մեր ջերմանավը ութերորդ շլյուզի մոտ է. այստեղ խաչաձևվում են երեք ճանապարհ՝ ջրային, խճուղային և երկաթուղային։ Խաչաձևումը եռահարկ է. ներքևում թունելով սլանում են ավտոմեքենաները, վերևում մեր ջերմանավն է լողում, նրա վրա՝ կամուրջով ջրանցքն է սլանում. իսկ երկնքում սավառնում են օդանավեր։ Ջերմանավը երկար սուրում է, դանդաղորեն ճեղքելով ջրանցքի կապույտ ջրերը, ավելի է մոտենում կարմիր աստղերով զարդարված Մոսկվային։



# ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ

ԼԵՎ ԿԱՍՍԻԼ

Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ

*Մեր նավը մոտեցավ արտասահմանյան հեռավոր մի քաղաքի։ Նավաստիները տախտակամածից նայեցին՝ ի՛նչ տարօրինակ բան է։ Ծովի վրա պարզ օր է, արևը երկնքից լուսավորում է, իսկ ափին ամեն ինչ կարծես մեռելային քնով քնած է։ Տոն չէ, սովորական օր է, բայց չորս կողմն աշխատանքը կանգ է առել։ Մեծ վերամբարձները, որոնք նավեր են բեռնաթափում, քարացել են մի ոտի վրա, ինչպես կռունկներ, ձգել են երկար պարանոցներն ու ոչ մի շարժում չեն անում։ Տրամվայներն էլ չեն աշխատում։ Բեռնատար ավտոները կանգնած են առանց շոֆերների, շոգեքարշերն՝ առանց մեքենավարների։ Ո՛չ ծուխ կա, ո՛չ մարդ. լռություն է։*

*— Այս ի՞նչ բան է, սրանց մոտ բոլորը մեռե՞լ են, ի՞նչ է,— զարմացան մեր նավաստիները։*

*Իսկ մի ծեր նավաստի ասաց.*

*— Ինչ որ անհասկանալի է. ես դեռ պատերազմից առաջ եմ եղել այստեղ. և հիշում եմ, որ միշտ էլ եռում էր աշխատանքը. ամեն ինչ շաչում էր, շառաչում, բեռնում-բեռնաթափում էր կատարվում. իսկ այսօր՝ ոնց որ թե քնած թագավորություն լինի այստեղ։*

*Նավահանգստում դատարկություն է տիրում։ Միայն մի տեղ, քարե պատի մոտ կանգնած են երկու մեծ բեռնատար նավ ամերիկյան շերտավոր դրոշակներով։ Նավի վրա մարդ չի երևում. բայց տախտակամածին ինչ-որ բաներ են դարսված։ Եվ ամեն ինչ ծածկված է բրեզենտով. չի էլ իմացվում, թե ինչ բեռ է դա։*

*Մեր նավը շչակը փչեց և հատուկ դրոշակ պարզեց։ Դրանով մենք լոցմանին էինք կանչում ափից։*

*Լոցմանը տեղական ծովային ուղեկցողն է՝ նավատարը։ Առանց նրան անծանոթ նավահանգիստ մտնելը նավի համար վտանգավոր է։ Ափերի մոտ խորությունը փոփոխվում է և հայտնի չէ, թե հատակին ինչ կա։ Կարող է պատահել, որ սուզված մի լաստանավի զարնվես, ծանծաղուտի մեջ խրվես, որն առաջ չկար. կարող է պատահել, որ քո տեղը չկանգնես, ուրիշ նավերի խարիսխները պոկես կամ նրանց ճամփան փակես։ Իսկ, ա՛յ, նավատարն այստեղ ամեն ինչ գիտի։ Եվ այն, թե հիմա որ տեղը ինչ խորություն ունի, և այն, թե որտեղ ինչ նոր ծանծաղուտ է գոյացել. նավի մոտենալու ժամանակ հոսանքը որտեղից է, որ նավը որտեղ պետք է կանգնեցնել...*

*Ուրեմն, կայմի վրա ազդանշանի դրոշակ բարձրացրինք, նավատարին կանչեցինք։ Մի անգամ էլ շչակով սուլեցինք։ Ափին ոչ ոք*



*չշարժվեց։ Հետո նայեցինք ու տեսանք, որ ափից, կարծես չուզենալով, դանդաղ հեռացավ մոտոռային մի նավակ նավատարի դրոշակը վրան։ Մոտեցավ մեր նավի կողին, մի քիչ տեղում դես ու դեն ճոճվեց, հետո կառանվեց նավին։*

*Եվ իջեցված նավասանդուղքով՝ տրապով տախտակամած բարձրացավ նավատարը։ Նա ամրակազմ ու թիկնեղ մի մարդ էր. դեմքը կարմրած ու հողմահար, գդակի մոմլաթով պատած հովարի տակից թավ հոնքերն էին դուրս ցցվել, իսկ ճերմակած բեղերի տակ ծխամորճն էր ծխում։ Նա առանց շտա-*

պելու ողջունեց մեր նավապետին, ծխամորճից ծուխ բաց թողեց ամբողջ տախտակամածով մեկ և ասաց.

— Հին ծովային սովորության համաձայն ես ձեզ պետք է շնորհավորեմ հաջող տեղ հասնելու առթիվ... Բայց թե չգիտեմ, բարի՞ ժամի եք դուք եկել մեզ մոտ, ժամանակի՞ն արդյոք։

— Ինչպե՞ս թե, իհարկե ժամանակին.— ասաց մեր նավապետը.— Հասել ենք ճիշտ ու ճիշտ այն օրը, այն ժամին, ինչպես որ նախատեսել էինք։ Հենց այսօր նավի խմելու ջուրը վերջացավ. իսկ քարածուխը վերջանալու վրա է։ Մենք ձեզ մոտ ուզում ենք ջրի ու ածուխի պաշար վերցնել։

Ծուխ բաց թողեց ծերունի նավատարն իր ծխամորճից, հանեց բերանից, մատով կըտկըտացրեց.

— Ա՛յ, տեսնում եք,— ասաց նա,— միայն իմ ծխամորճն է ծխում այստեղ. իսկ շուրջն ամեն ինչ հանգած է. ո՛չ կրակ կա, ոչ էլ մի փոքրիկ ծուխ։

— Իսկ ի՞նչ է պատահել որ,— հարցրեց նավապետը։

— Այն է պատահել, որ ամերիկացիներն ուզեցին մեր խաղաղ քաղաքն իրենց ամրոցը դարձնել, ամերիկյան ռազմական բազա շինել.— պատասխանեց նավատարն ու հոնքերը բարկությամբ շարժեց.— Ուղարկել էին նրանք իրենց նավերը տանկերով, օդանավերով ու թնդանոթներով բեռնված։ Ուզում էին այդ զենքը մեր խաղաղ ափին բեռնաթափել։ Բայց ժողովուրդը չուզեց իր հարազատ ափը օտար, ծովի այն կողմից եկած թնդանոթներ իջեցնել։ Սա մեր խաղաղ երկիրն է. մենք ֆաշիստներից պաշտպանեցինք մեր այդ խաղաղ երկիրը և նոր պատերազմ չենք ուզում։ Դրա համար էլ նավահանգստի բանվորները հրաժարվեցին ամերիկյան նավերը բեռնաթափել։ Մենք ամերիկացիներին ասացինք՝ «Հեռացեք այստեղից ձեր թնդանոթների հետ միասին, քանի ողջ և առողջ եք»։ Իսկ ամերիկացիները պահեստների տերերին մեծ փողեր խոստացան, կաշառեցին նրանց։ Դե՜, տերերը հարուստ մարդիկ են, ագահ են. նրանք և՛ իրենց, և՛ ժողովրդին ծախելու պատրաստ են։ Կանչեցին նրանք զինվորներին և մեր բանվորներին ուզում էին զոռով ստիպել բեռնաթափել ամերիկյան նավերը։ Բանվորներն էլ գործադուլ արեցին, աշխատանքը թողեցին։ Եվ ափին ամեն ինչ քարացավ. գործարանները կանգ առան, տրամվայները չեն երթևեկում, ավտոբուսները գարաժներում են կանգնած, խանութներն էլ փակ են։

Հենց որ նավատարը պատմեց վերջացրեց այդ բոլորը, ծովափն ասես կենդանություն ստացավ։ Մարդիկ հավաքվեցին նավամատույցների մոտ. թափահարում են ձեռքերը և մեր նավն են ցույց տալիս. իսկ հետո կայանի մոտից սլացավ արագընթաց մի կատեր։ Կատերի ցռուկի վրա սպիտակ դրոշակ էր ծածանվում, որի վրա կարմիր տառերով գրված էր՝ «ՆԴԿ»։

Կատերը թռավ հասավ մեր նավի կողին։ Եվ դեռ կանգ չէր առել, որ նրա վրայից ուղղակի նավասանդուղքին ցատկեց վայելչակազմ մի մարդ, լայն գրպաններով բրեզենտի կապիտ կուրտիկը հագին։ Նրա թևքին սպիտակ կապ կար, որի վրա կարմիր տառերով գրված էր «ԽԲ»։ Ինքը թուխ էր, եւ սանրած հարթ մազերը փայլում էին արևի տակ, զվարթ ու համարձակ աչքերն էլ ուղղակի նայում էին բոլորին։

— Ես,— ասաց,— ՆԴԿ-ի՝ Նավաստիների և Դոկերների Կոմիտեի նախագահն եմ. եկա ձեզ շնորհավորելու հաջող տեղ հասնելու առթիվ և բանվորների, նավաստիների ու դոկերների անունից հաղորդել շնորհակալություն, որ դուք պատիվ արիք մեզ և մտաք մեր նավահանգիստը։ Խաղաղություն և բարեկամություն, ընկերնե՛ր,— ասաց և թևի կապը ցույց տվեց։

— Բանվորները,— ասաց կոմիտեի նախագահը,— ուղարկել են ինձ և հրամայել են ասել ձեզ, որ սովետական նավին, սովետական նավաստիներին ուրախությամբ պատրաստ ենք տալ այն ամենը, ինչ որ անհրաժեշտ է։ Մենք լավ գիտենք, որ սովետական նավաստիները խաղաղության կողմն են, բոլոր աշխատավոր մարդկանց բարեկամության, երջանկության կողմն են։ Հիմա էլ ձեր սովետական երկիրը ամբողջ աշխարհում խաղաղություն է պաշտպանում։ Դուք խաղաղության թանկագին հյուրերն եք։ Դուք ծառայում եք սովետական նավատորմում,

իսկ սովետական նավատորմը՝ խաղաղությանը։ Ուրեմն մենք ձեր նավը կբեռնենք։ Լոցման'ն, տար նավը պատի մոտ բեռնելու, ջրաքարածուխ վերցնելու համար։

Նավատարը զվարթացավ. կանգնեց մեր նավապետի մոտ, ինչպես պետք է, և ցույց էր տալիս, թե նավն ուր քշի։

Մոտեցանք պատին. իսկ այնտեղ արդեն հավաքվել էր ժողովուրդը։ Եվ կարծես ամեն ինչ արթնացել էր, կենդանություն ստացել այդ քնած թագավորության մեջ։ Պտտվեցին, սկսեցին աշխատել հուժկու վերամբարձները. մեր նավի ածխանոցների վրա թեքեցին իրենց կռունկային պարանոցները։ Սուլեց շոգեքարշը և քաշեց բերեց ածխով բեռնավորված վագոնները, հոնդացին բեռնատար ավտոմեքենաները, ջուր մղելու զոռից փնչացին պոմպերը։



Ամերիկյան նավերից վազեցին եկան նավապետները. «Օ՜, լա՜վ է, շատ լավ է։ Գործադուլը վերջացավ. դե, շո՛ւտ եկեք մեր նավերն էլ բեռնաթափեցեք։ Օքե՜յ, աշխո՜ւյժ... թե չէ մենք արդեն մի շաբաթ է կանգնած ենք, իզուր տեղը դրամ ենք վատնում։ Ե՛վ մեր, և՛ ձեր տերերը վնաս են կրում»։

Կոմիտեի նախագահը կանգնեց ամերիկացի նավապետների առաջ և այնպես նայեց նրանց աչքերի մեջ, որ նրանք միայն կոպերը թարթեցին և երեսները շուռ տվին։

— Ահա թե ինչ, միստրնե՛ր, ավելի լավ է՝ մի կողմ քաշվեցեք և մարդկանց մի՛ խանգարեք, թողեք աշխատեն։ Ձեր նավերը բոլոր երկրները պատերազմ են տանում, իսկ սովետական նավը խաղաղությամբ ու բարեկամությամբ է եկել մեզ մոտ։

— Եվ ի՞նչ, երկա՞ր պետք է կանգնենք մենք այստեղ,— հարցրին ամերիկացիները։

— Մինչև որ ինքներդ չհեռանաք. իսկ եթե մտադրվեք նույնիսկ մի թնդանոթ իջեցնել մեր հողի վրա, մենք մի ակնթարթում ծովը կգլորենք։ Այդպես էլ գիտցեք։

Ամերիկացի նավապետները վերադարձան իրենց նավերը. մրթմրթում են, բռունցքներով սպառնում, բայց ոչինչ անել չեն կարողանում։ Տեսնում են, որ ժողովուրդն իրենց վրա կատաղությամբ է նայում։ Հանկարծ ու, իսկապես, թնդանոթների հետ միասին իրենց էլ ծովը գցեն...

Մեր նավի ածխանոցները ածուխ են լցնում, ջրամբարները՝ ջուր։ Սովետական դրոշակակիր նավի մոտերքում կյանքը եռում է, իսկ այնտեղ, որտեղ ամերիկացիներն են կանգնած, ամեն ինչ մեռած է։

Երեկոյան դեմ ամեն ինչ վերջացրինք, թարմ ջրի պաշար վերցրինք։ Նավաստիների ու դոկերների կոմիտեի նախագահը հրաժեշտի ժամանակ ասաց.

— Հաղորդեցեք բոլոր սովետական մարդկանց, որ մենք ամբողջ հույսներս դնում ենք ձեզ վրա։ Դուք ֆաշիստներին ջախջախեցիք. դուք բոլոր ազնիվ մարդկանց բարեկամն եք։ Դուք ամուր կանգնած եք խաղաղության համար, իսկ մենք ձեր օգնականներն ենք այդ գործում։ Բարի ճանապա՜րհ, խաղաղությո՜ւն և բարեկամությո՜ւն։

Նավատարը մեր նավը դուրս տարավ բաց ծով։ Հրաժեշտ տվեց նա սովետական նավաստիներին, հառաչեց, ծխամորճից ծուխ բաց թողեց և կատերի վրայից ձեռքը թափահարեց...

— Խաղաղությո՜ւն և բարեկամությո՜ւն...

Եվ մեր նավը ծով դուրս եկավ։ Իսկ ծովափին ամեն ինչ քարացավ, կարծես նո-

րից քնեց։ Բայց դա քնած թագավորություն չէ։ Չեն ննջում այնտեղ նրանք, որոնք խաղաղություն են պաշտպանում։

Ծովից երևում էր ամեն ինչ. կանգնած են քարե նավամատույցների վրա, ծովապատնեշի մոտ, բանվորները, նավաստիներն ու դոկերները բրեզենտի կուրտիկներ հագած, իսկ թևքերին սպիտակին են տալիս կապերը։ Կանգնած են գործադուլավորները և չեն թողնում, որ պատերազմն իրենց ափն իջնի։

Խաղաղությունն են պաշտպանում. խաղաղությունն ու բարեկամությունը։

Թարգմ. Վ. ՏԱԼՅԱՆ

# ԱՍԵՂԻԿ

ԱՆ. ՇԻՐՈՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Սեղան նստած սենյակում
Ե՛վ կարում է, և՛ երգում.

«Ասեղիկ, իմ ասեղի՜կ,
Բարակ ու սուր ասեղիկ,
Մի՛ ծակիր իմ մատիկը,
Կբարկանա տատիկը։

Թե՛լ, ինչո՞ւ չես երկարում,
Տատին գոգնոց եմ կարում,



Տատիկը լավ չի տեսնում,
Ամեն գործի չի հասնում»։

Բայց թելիկը խճճվեց,
Ասեղիկը դուրս ցցվեց,
Ծակեց նրա մատիկը...
— Վո՜ւշ-վո՜ւշ,— արեց տատիկը։




Վ. ԱՆԱՆՅԱՆ

Նկ. ԱՐ. ՋԱՔԱՐՅԱՆԻ

Երբ ես Լ. քաղաքում զինվորական էի, հայկական զորամասն այնտեղ էր տեղավորված։ Մեր զորամասում էր նաև հեծյալ հետախույզների հրամանատար Արամ Մկրտչյանը։ Նա տեղացի էր, իսկ բնակարանը, ուր նրա կինն ու երեխան էին ապրում, հեռու չէր զորանոցից։

Ասում էին՝ Արամ Մկրտչյանի Շառատ անունով ձին իր տիրոջ ընտանիքի հետ այնպիսի սիրով էր կապված, որ երբ զորքը գնում էր Արագածի լանջերը զորաշարժի, ձին կարոտից տրտմում էր ու հաճախ դունչը մեկնում դեպի դաշտավայրը, ուր քաղաքն էր երևում հեռվից, և խրխնջում էր սրտամորմոք։ Արամը գիտեր, որ ձին ամենից շատ կարոտում է իր որդուն՝ երեք տարեկան Վաչիկին։ Եվ նա շոյում էր կենդանու աչքերն ու մեղմ ասում.

— Շուտով, շուտով պարապմունքը կվերջանա՝ կգնանք տուն, Վաչիկի մոտ։

Ձին սիրած անունը լսելով, տիրոջն այնպես էր նայում իր խելոք, արտահայտիչ աչքերով, որ թվում էր՝ հիմա կխոսի հետը։ Իսկ երբ զորքը սարից դաշտ էր իջնում, Շառատը անհամբերությունից դոփում էր գետինն ու ձգտում էր րոպե առաջ հասնել տուն։

Ձիերին տանում էին գոմ,՝ տեղավորում, հանգիստ տալիս. բայց Շառատի ուշք ու միտքը դեպի դուրսն էր։ Ախորժակով չէր ուտում գարին, խրխնջում էր անհանգիստ։ Այն ժամանակ տերը արձակում էր նրա կապը և առաջնորդում դեպի իր տուն։ Ի՜նչ ուրախություն էր շողում կենդանու խելոք աչքերում, երբ շեմքին երևում էր փոքրիկ Վաչիկը՝ շաքարի կտորը ձեռքին։ Իր ուրախությունը Շա-

ոստն արտահայտում էր աղմկալի խրխնջալով ու ետևի ոտքերի վրա կանգնելով, առաջին աջ ոտքով ծիծաղելի շարժումներ էր անում. իր խելքով շաքար էր խնդրում։ Ապա անուշ պատառն առնելուց հետո, առաջ էր մեկնում ու տղային դեմ անում իր աղեղնաձև ողորկ վիզը։ Երեխան իր թաթիկներով շոյում էր Շառատի վիզը, իսկ Վաչիկի մայրը շեմքում կանգնած նայում էր կենդանու մեղմ, խելոք աչքերին ու սիրտը մղկտում էր. «Ո՞նց եմ ես սրանց բաժանելու իրարից...» մտածում էր նա. ամուսինը զորամասի հետ շուտով ռազմաճակատ էր մեկնելու։



Աշնանամուտին լեռներից հանկարծ ցուրտ քամիներ խուժեցին դաշտ և Վաչիկը հիվանդացավ։ Նա այլևս չէր կարողանում շեմք դուրս գալ և դիմավորել իր սիրելի Շառատին։

Ձին ախորժակը կորցրել էր. իր տերերի տխուր դեմքին նայելով, կենդանական իր բնազդով նա զգում էր, որ ինչ-որ վատ բան է պատահել Վաչիկին։ Դռանը նա խրխնջում էր աղիողորմ, բայց ո՛չ ձիուն կարելի էր սենյակ մտցնել, ոչ էլ ջերմության մեջ վառվող երեխային դուրս տանել։

— Տար Շառատի մոտ, մամա՛,— խնդրում էր երեխան, ձիու խրխինջը լսելով։

Մայրը ստիպված եղավ հիվանդին փաթաթել վերմակի մեջ և տանել լուսամուտի մոտ։ Ձին երեխային կենդանի տեսնելով՝ բարձրաձայն վրնջաց, իսկ Վաչիկը մոր գրկից իր բազուկներն էր մեկնում դեպի նա։

Ութ-տաս սրտամաշ օրեր անցան, մինչև որ Վաչիկն առողջացավ և տնից դուրս եկավ։ Նրան նստեցրել էին իր Շառատի մեջքին և ձին քայլում էր երջանիկ ու հպարտ իր թանկագին բեռով։

Մի օր մի զարմանալի դեպք կատարվեց։ Վաչիկը հոր հետ մտել էր ձիերի գոմը և շոյում էր իր Շառատի վիզը, իսկ ձին գարի էր ուտում։ Հայրը ինչ-որ գործով դուրս գնաց։ Այդ պահին գոմի մյուս ծայրից կապը կտրեց Շառատի հակառակորդը՝ Սևակը և հարձակվեց նրա վրա։ Շառատը իր հետևը հակառակորդի կողմն արավ, որ հարվածի, բայց տեսնելով տղային իր ոտքերի մոտ, իսկույն փոխեց իր մտադրությունը և ուժեղ ատամներով բռնեց երեխայի շորից, բարձրացրեց դրեց մսուրքի մեջ, որից հետո միայն սկսեց իր կռիվը հակառակորդի դեմ։ Հայրը, որ այդ րոպեին դուռը բացել և դեպի կովողներն էր շտապում, տեսավ իր ձիու արարքը և զարմանքից քարացած մնաց...

* * *

Հազար ինը հարյուր քառասուն երկու թվի դեկտեմբերի երկուսին մեր դիվիզիայի գույքը, զենքը, մարդիկ, ձիերը բարձեցինք գնացքները. դիվիզիան մեկնում էր ռազմաճակատ։ Կայարանում մենք ներկա եղանք այսպիսի սրտաշարժ տեսարանի։ Կանգնած է Վաչիկը մոր փեշից բռնած։ Արտաքուստ հանգիստ Արամը սիրտ է տալիս կնոջը, իսկ ապրանքային վագոնի բաց պատուհանից իր գլուխը դուրս է հանել Շառատն ու խըրխընջում է...

Շատ ժողովուրդ էր եկել մեզ ճանապարհ դնելու. ամեն մեկս մեր հարազատներն ունեինք։

Գնացքը շարժվեց։ Կառամատույցի վրա անհաշիվ գլխարկներ ու թաշկինակներ թափահարվեցին և մենք մեկնեցինք ռազմաճակատ՝ Շառատն էլ մեզ հետ։

Վաչիկը մի ձեռքը բարձրացրել էր և օդում շարժելով՝ բարի ճանապարհ էր ասում հորը, իսկ մյուս ձեռքը բռունցք արած արցունքն էր սրբում...




Ն. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
(Ալպինիզմի և տուրիզմի ռեսպուբլիկական սեկցիայի նախագահ)

*Մեր մեծ հայրենիքի հարավային սահմանների երկայնքով ձգվում են հսկայական լեռնաշղթաները։ Դրանցից շատերի ձյունապատ կատարները ծովի մակերևույթից 4000—5000 մետր բարձր են. իսկ Պամիրում և Տյան-Շանում («Երկնային լեռներ») կան գագաթներ, որոնք 7000 մետրից ավելի բարձր են։*

*Սովետական Միության ամենաբարձր լեռնագագաթը՝ Ստալինի անվան պիկը (7495 մետր) գտնվում է Արևմտյան Պամիրում։ Համարյա նույնքան բարձր է Տյան-Շանի Հաղթանակի պիկը։*

*Շատ դժվար և վտանգավոր է բարձրանալ այդ լեռները։ Դրա համար էլ միայն ալպինիստները, որոնք լավ են ուսումնասիրել լեռները, գիտեն ժայռերի, ձյան ու սառույցի միջով առաջ շարժվելու տեխնիկան և պարապում են սպորտով, կարող են բարձրանալ այդ գագաթները։*

*Առաջին ալպինիստական վերելքը մեր երկրում կատարված է ավելի քան 120 տարի առաջ։ 1829 թվականի ամռանը Կիլլար Խաշիրովը առաջինը բարձրացավ Էլբրուսի արևելյան գագաթը, որը 5595 մետր բարձրություն ունի։ Նույն տարվա սեպտեմբերին հայ մեծ գրող և լուսավորիչ Խաչատուր Աբովյանը պրոֆեսոր Պարրոտի հետ միասին առաջին անգամ բարձրացան Մեծ Արարատի գագաթը (5156 մետր)։ Այդ երկու վերելքով 1829 թվականին դրվեց հայրենական ալպինիզմի սկիզբը։*

*Հետագայում լեռնային շրջանների ուսումնասիրությունն ավելի կազմակերպված ընթացավ։ Դրան մասնակցեցին մեր երկրի ժողովուրդների խիզախ զավակները, ճանապարհորդներ և գիտնականներ՝ Ն. Պրժեվալսկին, Պ. Սեմյոնով-Տյանշանսկին, Լ. Շառոյանը, Գ. Քավթարաձեն և Կովկասի ու Միջին Ասիայի լեռների ուրիշ շատ հետազոտողներ։*

*Մեր հայրենիքի լեռները շատ գեղեցիկ են։ Յուրաքանչյուր քայլի վրա ալպինիստի աչքի առաջ բացվում են նորանոր անկրկնելի տեսարաններ՝ ժայռերի կուտակումներ, արևի տակ փայլող սառցադաշտեր, փրփրաբաշ գետեր, ալպիական մարգագետինների թավշե գորգեր և դեպի երկինք խոյացած գագաթների ձյունե դրահներ։*

*1910 թվականի սեպտեմբերին ռևոլյուցիայի բոցաշունչ տրիբուն Սերգեյ Միրոնովիչ Կիրովը գտնվելով Վլադիկավկազում (այժմ Ջաուջիկաու), բարձրացավ Կազբեկի գագաթը (5053 մետր)։ Ս. Մ. Կիրովը տեղական «Թերեք» թերթում տպագրեց մի հոդված այդ վերելքի մասին։*

*Ահա թե ինչ է գրում նա.*

*«Մեկն անց քսան րոպեին մենք կանգնած էինք գագաթին։ Ոչ մի կերպ չի կարելի նկարագրել այն վեհությունը, որ բացվում է այստեղից։ Ուզում ես ընկնել ձյան վրա և համբուրել հրճվանքից, որը համակել է քեզ, տեսնելով բնության այդ հոյակապ բազմազանությունը և նրա անսահման վեհությունը։*

Չի կարելի պատկերացնել թեկուզ մի կաթիլ զգացմունք ունեցող մարդ, որը չակնածի, նայելով այդ գրավիչ տեսարանին...

Մի անգամ տեսնելով այդ պատկերը, չի կարելի մոռանալ այն ամբողջ կյանքում... Ինչպիսի՜ լայնարձակություն, ինչպիսի՜ դյութիչ գեղեցկություն այդ բոլոր ձյունե հսկաների, որոնք հզոր կերպով բարձրացել են դեպի երկինք... Գույների և երանգների ինչպիսի՜ բազմազանություն այս անծայր լեռնաշղթաների ժայռոտ մասերում, որոնք կորչում են հեռո՜ւ-հեռվում...»։

Սովետական իշխանության տարիներին ալպինիզմը մեր երկրում սպորտի մասսայական ձև դարձավ։ Մեր արդյունաբերությունը ալպինիստների համար բաց է թողնում ամենալավ հանդերձանքը՝ սառցակտրիչներ, պողպատե գամեր, ժայռի և սա-



Ալպինիստները բարձրանում են Պամիրի գագաթներից մեկը։

ռույցի կեռեր, պարաններ, կարաբիններ և ուրիշ սարքեր։ Դրանց օգնությամբ սովետական ալպինիստները հաղթահարում են քարափների ամենադժվար տեղամասերը։ Բայց ամենակարևորը սովետական մարդկանց հատկություններն են՝ քաջությունը, հաղթելու կամքը, ընկերոջն օգնելու պատրաստակամությունը, կոլեկտիվիզմի զգացումը։ Դրանք ապահովում են ալպինիստական վերելքների հաջող անցկացումը։

1933 թվականին երկրի ուժեղագույն ալպինիստների մի խումբ առաջին անգամ բարձրացավ Ստալինի պիկը։ Տասներեք օր շարունակվեց հերոսական գրոհը։ Ալպինիստները 30—40 աստիճան սառնամանիքի պայմաններում, վերևից թափվող քարերի կարկուտի տակ, անցան ժայռամիջյան վրտանգավոր ուղին։

Գիշերելով թեթև վրաններում, մարդիկ տառապում էին «լեռնային հիվանդությունից», որն առաջ էր եկել թթվածնի բացակայության հետևանքով։ Չնայած դրան, լուսաբացին նրանք շարունակեցին վերելքը։ Արշավի մասնակիցները համերաշխ կերպով, հավասարապես կրում էին դժվարությունները, օգնում մեկը մյուսին։ Սեպտեմբերի երեքին Դ. Գուշչինը և Ե. Աբալակովը ամուր կապվեցին պարաններով և դուրս եկան վերջին ճամբարից, որը տեղավորված էր 7000 մետր բարձրության վրա։ Ընկնելով խոր ձյան մեջ, շրջանցելով սառցադաշտի դժվարին ճեղքվածքները, նրանք հասան դանակի պես սուր, ժայռոտ ցցվածքին։ Գագաթը մոտ էր, բայց ամեն մի քայլը հսկայական լարվածություն էր պահանջում սպորտսմեններից։ Փոթորկաշունչ քամին սպառնում էր խիզախներին խոր անդունդը գցել։ Կառչելով քարե ելուստներից Ե. Աբալակովը հասավ բարձունքին։ Սառած ձեռքերով նա քարերից բուրգ կազմեց, որի մեջ դրեց մի գրություն։ Այդպես ավարտվեց առաջին վերելքը դեպի Սովետական Միության ամենաբարձր գագաթը, որ կրում է մեծ Ստալինի անունը։

Սովետական ալպինիստները վերջին տարիներին շատ անգամ են լեռները բարձրացել։ Նրանք հասել են Լենինի անվան պիկին (7127 մետր), Կորժենևսկայայի պիկին (6910 մետր), կատարել են տրավերսներ Սվանեթիայում՝ Շխելդայի, Ուշբայի և Կովկասի ու Միջին Ասիայի դժվարին բարձունքներում։ Այժմ արդեն ոչ թե տասնյակ, այլ հարյուրավոր մարդիկ են բարձրանում լեռնագագաթները, հազարավոր ֆիզկուլտուրնիկներ են մասնակցում բարձրալեռնային դժվարին վերելքներին։ Նրանք գիտության համար ար-

ժեքավոր շատ հայտնագործումներ են կատարել, օգնել են գիտնականներին ճշգրտելու քարտեզները։

Ավելի ու ավելի մեծ տարածում է ստանում ալպինիզմը Սովետական Միության լեռնային ռեսպուբլիկաներում։ Օրինակ՝ անցյալ տարի Հայաստանում մի քանի օրվա ընթացքում Արագածի գագաթը (4096 մետր) բարձրացան Երևանի, Լենինականի 1500 ալպինիստ և ռեսպուբլիկայի մի շարք շրջանների կոլտնտեսականներ։ Ծաղկաձորի և Կիրովականի ճամբարների մոտ 1000 պիոներ և դպրոցական բարձրացան Թեղենիսի և Մայմեխի գագաթները։ Արագածի արևմտյան գագաթին ալպինիստները գտան մի մակագրություն, որը 1895 թվականին փորագրել է ժայռի վրա հայտնի ռուս ճանապարհորդ, Կովկասի լեռների հետախուզող Ա. Պաստուխովը։

1950 թվականին կազմակերպվեց առաջին արշավախումբը դեպի Զանգեզուրի լեռնաշղթաները։ Ալպինիստները բարձրացան Կապուտջուղ լեռան գագաթը, որը 3906 մետր բարձրություն ունի և այնտեղ հայտնաբերեցին մի փոքրիկ քարե աշտարակ, որ ավելի քան 100 տարի առաջ կառուցել էր լեռների հայտնի ռուս հետազոտող Ի. Խոձկոն։

Այս տարի ալպինիստները Զանգեզուրի լեռնաշղթաների ուսումնասիրությունն ավելի կուժեղացնեն։ Սիսիանի և Մեղրու շրջանների միջև ընկած տեղամասում կան տասից ավելի ժայռոտ լեռներ, որոնք ունեն 3600-ից մինչև 3900 մետր բարձրություն։

Այս ամսին Կապուտջուղի բարձունքներից սկիզբ առնող Օխչի գետի գեղատեսիլ անտառապատ կիրճում, բացվեց «Խիմիկ» կամավոր ընկերության բարձրալեռնային ալպինիստական ճամբարը։

Ռեսպուբլիկայի 150 ալպինիստ ամառվա ընթացքում կհանձնեն «ՍՍՌՄ առաջին աստիճանի ալպինիստի» կրծքանշանի նորմաները։ Ապագա ալպինիստները՝ Հայաստանի պիոներները և դպրոցականները, ամառային արձակուրդների եռուն օրերին պետք է մասնակցեն բարձրալեռնային վերելքներին։ Պատանիները և աղջիկները պիոներական ճամբարներում կարող են մասնակցել դեպի Թեղենիս և Մայմեխ կատարվող ուսումնական մարզական արշավներին։ Երևանից ոչ հեռու գտնվում են Արայի (2577 մետր) և Հատիս (2577 մետր) լեռները։ Ալպինիզմի և տուրիզմի հրահանգիչների ղեկավարությամբ դժվար չէ մասսայական արշավներ կազմակերպել դեպի այդ լեռները։ Պատանի ալպինիստները բարձրանալով այդ լեռները կվարժվեն արշավային կյանքին, կսովորեն հաղթահարել դժվարությունները, ձեռք կբերեն գիտելիքներ, որոնք նրանց պետք կգան «ՍՍՌՄ առաջին աստիճանի ալպինիստ» կրծքանշանի նորմաները հանձնելու ժամանակ։

# ԿՈՄՍՈՄՈԼՍԿ

ԱՐ. ՕՀԱՆՅԱՆ
*(Աշխարհագրական գիտությունների թեկնածու)*

Վերցրեք ՍՍՌՄ-ի քարտեզը և նրա վրայով շարժվեցեք Երևանից դեպի արևելք:

Ահա Բաքուն. անցնում եք Կասպից ծովը և հասնում Կրասնովոդսկ: Շարունակում եք ճանապարհը՝ դեպի Աշխաբադ, Տաշքենդ, Սեմիպալատինսկ, Իրկուտսկ, Չիտա, Խաբարովսկ և վերջապես 16-րդ օրը հասնում եք Կոմսոմոլսկ, որը գտնվում է Ամուր գետի ձախ ափին:

Դա մի մեծ, գեղեցիկ, սոցիալիստական քաղաք է: Նրա գիշերային լույսերը երևում են տասնյակ կիլոմետր հեռավորությունից:

Իսկ գիտե՞ք, թե քանի տարեկան է այդ մեծ քաղաքը: Մոսկվան 805 տարեկան է, Երևանը առաջին անգամ գրավոր հիշատակվել է սրանից 1250 տարի առաջ, իսկ Կոմսոմոլսկն ընդամենը 20 տարեկան է:

Քսան տարի առաջ այստեղ, խուլ ու վայրի տայգայի մեջ, ճահիճների մոտ կար մի փոքրիկ ձկնորսական գյուղ՝ Պերմսկոյե անունով: Անտառի թավուտներում, եղևնիների, կաղնիների, կեչիների, թղկիների,

հացեհիների տակ թափառում էին՝ վարազները, արջերը, ուսուրիական այծյամները: Երբեմն ուսուրիական վագրը գալիս կանգնում էր Ամուրի ափ, ժայռոտ ափին ու ամեհի հայացքով նայում Պերմսկոյե գյուղի ձկնորսներին:

Եվ ահա 1932 թվականին Խաբարովսկ քաղաքից դուրս եկան «Կոլումբոս» և «Կոմինտերն» նավերը: Նրանք Ամուրի հոսանքով ներքև էին տանում մի քանի հարյուր կոմերիտականների: Նավերի վրայից հարմոնի նվագակցության տակ լսվում էր կոմերիտական ուրախ երգը: Մոսկվայի, Լենինգրադի, Մինսկի, Օդեսայի կոմերիտականները եկել էին Խաբարովսկ և այժմ գնում էին կատարելու պարտիայի և մեծ Ստալինի առաջադրանքը՝ Ամուրի ափին, տայգայում, մի նոր քաղաք կառուցելու:

1932 թվականի մայիսի 10-ին կոմերիտականները ափ իջան Պերմսկոյե գյուղի մոտ: Շուրջը միայն մռայլ տայգան էր և ճահիճները, ուր բյուրավոր մոծակներ էին վխտում:

Բայց կոմերիտականներն սկսեցին համերաշխ աշխատանքը և գրոհը դարավոր տայգայի դեմ: Կացնի զրնգուն հարվածների տակ տապալվում էին վիթխարի ծառերը: Հանվում էին ծառերի խորանիստ արմատները: Անտառը նահանջում էր: Անտառից քայլ առ քայլ խլված բացատում կառուցվեց առաջին ձեռնարկությունը՝ փայտամշակման գործարանը:

Երբ առաջին գործարանի սուլոցը վրդովեց տայգայի նիրհը, կոմերիտականները խանդավառված սկսեցին պարել. ոմանք էլ ուրախությունից արտասվեցին:

— Մենք այստեղ տասնյակ գործարաններ կկառուցենք,— ասում էին խիզախ երիտասարդները:— Այստեղ կա և՛ ձուկ, և՛ «փափուկ ոսկի» (գազանի մորթի), և՛ հրաշալի ծառեր, որոնց փայտից կարելի է նավեր պատրաստել: Մոտակա լեռներում մեր երկրաբանները գտել են՝ երկաթահանք, քարածուխ, նավթ: Մենք այստեղ պողպատ կձուլենք, մեքենաներ կշինենք. մենք կկատարենք պարտիայի և մեծ Ստալինի առաջադրանքը...

Եվ նրանք պարտիայի Խաբարովսկի Երկրային Կոմիտեի ղեկավարությամբ կառուցում էին նոր քաղաքը. չորացնում էին ճահիճները, կառուցում տներ, փողոցներ:

Մի օր էլ նրանք որոշեցին նոր քաղաքը անվանել հերոսական կոմերիտմիության անունով: Կոմերիտականներն իրենց ցանկության մասին հայտնեցին Մոսկվա: Շուտով հրապարակվեց կառավարական որոշումը՝ քաղաքը կոչվեց «Կոմսոմոլսկ Ամուրի վրա»:

Չտեսնված արագությամբ կառուցվեց և գործի դրվեց Ամուրի նավաշինական հսկա գործարանը: Պարտիայի 18-րդ համագումարը կոմերիտականներին առաջադրեց 3-րդ հնգամյակում ավարտել մետաղաձուլական գործարանի կառուցումը:

Կոմերիտականներն այս առաջադրանքն էլ պատվով կատարեցին: Շարք մտավ Հեռավոր Արևելքի առաջին մետաղաձուլական հսկան, որը կոչվեց «Ամուրստալ»: Մեկը մյուսի ետևից գործարկվեցին՝ ձկան կոմբինատը, նավթազտիչ գործարանը, աղյուսի գործարանները և այլ ձեռնարկություններ:

Կոմսոմոլսկում բարձրացան բազմահարկ տներ, գործարանային հոյակապ շենքերով: Ձգվեցին ասֆալտապատ երկար փողոցները՝ Ստալինի պողոտան, Կիրովի փողոցը, Ամուրի առափնյա փողոցը և ուրիշ շատ փողոցներ: Բացվեցին տասնյակ դպրոցներ, տեխնիկումներ: Սկսվեց թերթերի հրատարակումը: Գործի անցան թատրոնները, կինոները, բուժհիմնարկները, մանկապարտեզները, բաղնիքները: Քաղաքի բնակչությունը շուտով տասնյակ հազարների հասավ:

Քաղաքը կառուցող առաջին կոմերիտականներից շատերը դարձան ղեկավար պարտիական աշխատողներ, գործարանների դիրեկտորներ, որակյալ մասնագետներ: Նրանցից շատերի կուրծքը զարդարվեց «Կոմսոմոլսկի պատվավոր կառուցողին» նշանով:

Ամուրի ափին հնչեց ուրախ երգը՝

«Կոմսոմոլսկը մեր երկրի քաղաքն է,

Կոմսոմոլսկը մեր Արևելքի սիրտն է»:

Այնտեղ, ուր ոչ հեռու անցյալում կային միայն հատ ու կենտ ձկնորսներ, մոտ ապագայում քաղաքի բնակչությունը հասնելու է 500 հազար մարդու:

Ամեն օր տասնյակ նավեր են գալիս Կոմսոմոլսկ և մեկնում նրա նավահանգրս-

տից: Ամուրը՝ իր մեծությամբ աշխարհի 8-րդ գետը, շնորհիվ Կոմսոմոլսկի նավահանգստի շատ աշխուժացել է:

Ամեն օր այդ քաղաքի երկաթուղային կայարանն են հասնում տասնյակ մարդատար ու բեռնատար գնացքներ: Նրանց վագոնների վրա գրված է՝ «Մոսկվա—Կոմսոմոլսկ Ամուրի վրա»:

Ամուրի նավաշինական գործարանի նավերը լողում են Սովետական երկրի գետերում, լճերում ու ծովերում: «Ամուրստալի» պողպատով մեր երկրի մեքենաշինական գործարաններում հզոր մեքենաներ են պատրաստում:

Կոմսոմոլսկը անվանում են նաև երիտասարդության քաղաք: Կոմերիտականների ձեռքերով հիմնված քաղաքը միշտ էլ երիտասարդ կմնա:

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ դրուժինաներում և ջոկատներում

## ԲԱԿԱՅԻՆ ՃԱՄԲԱՐՈՒՄ

Բակային ճամբարի ջոկատի խորհրդի նախագահ Աիդա Սիմոնյանը գետնի վրա կռացած ծաղկանոցի համար տեղ էր գծագրում:

— Աիդա՛, ավելի լավ է ինձ օգնես, միասին դրոշակի ձողը տնկենք, իսկ հետո կսկսենք ծաղկանոց պատրաստել,— ասաց հինգերորդ դասարանի աշակերտ Ռազմիկ Սարգսյանը:

— Դու ճիշտ ես ասում, Ռազմի՛կ,— համաձայնեց Աիդան:

Եվ երեխաները գործի անցան: Քիչ հետո երկաթե բարձր ձողը կանգնեցված էր: Նրա վրա ամրացված բլոկի օգնությամբ դրոշը պետք է վեր բարձրանար...

Դրանից հետո աշխատանքը նոր թափ ստացավ: Աիդան սկսեց աստղաձև ծաղկանոց և անցուղիներ գծել: Ջուլիետա Միքայելյանը ավազ էր բերում և մանրացնելով լցնում անցուղիների վրա, իսկ երկրորդ դասարանի աշակերտ Սյոմիկ Սիմոնյանը փոքր դույլով կրաջուրը ձեռքին երկու կողմից սպիտակացնում էր անցուղիները ու լցնում աստղի շուրջը գծագրված շրջանաձև փոսի մեջ:

Մի քանի պիոներներ, Վերա Մելքոնյանի ղեկավարությամբ բակի քարերը մաքրում էին՝ խաղերի հրապարակ պատրաստելու համար:

— Առավոտյան լիցքային վարժությունները և վոլեյբոլի խաղերն այստեղ կանցկացնենք, իսկ սպորտային մյուս մրցումներն ու խաղերը քաղաքային ստադիոնում,— բացատրում էր ջոկատավարը:

— Երեխանե՛ր,— գրքերի մի մեծ կապոց ձեռքին բակ մտնելով, ընկերներին դիմեց հինգերորդ դասարանի աշակերտուհի Մ. Սարգսյանը,— ջոկատավարն ինձ բակային ճամբարի գրադարանապետուհի է նշանակել, տանը ինչքան հետաքրքական մանկական գրքեր ունենք բերենք: Դպրոցի պիոներական դրուժինայի գրադարանն էլ մեզ կօգնի: Նոր թերթեր էլ ենք ստանալու, մենք իսկական, ՛հարուստ գրադարան ենք կազմակերպելու:

Սրանք Ստեփանավանի Լենինի անվան փողոցում բնակվող պիոներներն էին, որոնք կոմերիտմիության շրջկոմի օգնությամբ Լենինի փողոցի № 10 շենքի բակում բակային ճամբար կազմակերպեցին: Հաջողությամբ փակելով ուսումնական տարին, նրանք ձեռնամուխ եղան իրենց ամառային աշխատանքների կազմակերպմանը:



*Երևանի Սպանդարյան ռայոնի 16-րդ բակային ճամբարում լսում են «Ինչպես էր կոփվում պողպատը» ռադիո-բեմադրությունը:*

Մաքուր ու հարթ բակը, նրան կից գեղեցիկ այգին, ապա ստադիոնը, ձորը, գետը, Ստեփանավանի գեղատեսիլ և կանաչ դաշտերն ու անտառները դեպի իրենց էին ձգում պատանի սպորտսմեններին, բնասերներին ու ճանապարհորդներին: Բակային ճամբա-

ռում բազմաթիվ երեխաներ ճավաքվեցին: Այժմ նրանք կարող էին ճանգստանալ, խաղալ, զբոսնել ու լողանալ սառնորակ ջրերում:

Հունիսի սկզբին տեղի ունեցավ բակային ճամբարի ճանդիսավոր բացումը: Հայկական ՍՍՌ Պետական ճիմնի ճնչյունների տակ ձողի վրա դանդաղորեն բարձրացավ ու թեթև քամուց սկսեց փողփողալ դրոշը:

— Մեր ճամբարը շուտով ավելի կմեծանա: Մոտ օրերս Ստեփանավան ճանգստանալու կգան շատ ամառանոցավորներ: Մեզ մոտ ճյուր եկած պիոներներին կներգրավենք մեր շարքերը և մասնակից կդարձնենք մեր ուրախ կյանքին,— ճամբարի բացման օրն ասաց ավագ ջոկատավարը:— Սպորտային խաղեր կկազմակերպենք, արշավի կգնանք դեպի Արջասար, Լոռի-բերդ, Շագարդայի անասնապաճական ֆերման, Գոմաձոր և շատ ուրիշ գեղատեսիլ վայրեր: Հանդիպումներ կունենանք Ստեփանավանում կազմակերպված ճամբարների պիոներների և անտառային դպրոցում ճանգստացող երեխաների ճետ:

Այդ երեկո նրանք խարույկ վառեցին, նրա շուրջը երգեցին, պարեցին և արտասանեցին: Վառ տպավորություններով պիոներները ցրվեցին: Նրանցից յուրաքանչյուրը մտածում էր ճամբարում վաղվա իր կատարելիք աշխատանքի մասին:

Պետք էր պատի թերթ լույս ընծայել, նուշատետր պատրաստել, պատմել կարդացած ճետաքրքրական գրքի մասին, մասնակցել վոլեյբոլի մրցմանը, տուփեր պատրաստել միջատների, քարերի ու ծաղերի տեսակների ճամար, դրոշի մոտ ցանված ծաղիկները ջրել...

Անցել են շատ օրեր: Լավ, ուրախ ու կազմակերպված են անցկացնում իրենց ամառը Լենինի փողոցի № 10 բակի և ճարևան շենքում ապրող պիոներները:

Գ. ԽԱԴԱԼՅԱՆ

## ԶԱՅԿԻՆԱՅԻ ԱՆՎԱՆ ԴՐՈՒԺԻՆԱՅՈՒՄ

*Ապարանի շրջանի Քասախ գյուղի Լիզա Զայկինայի անվան պիոներական դրուժինայի «Գերազանցիկ» պատի թերթում լույս տեսավ «Օգնենք կոլխոզի բերքաճավաքին» ճոդվածը: Հոդվածագիրը երկրորդ ջոկատի ջոկատավար Համլիկ Խաչատրյանն էր: Նա գրում էր, որ պիոներներն իրենց ազատ ժամերին և արձակուրդների ընթացքում պետք է օգնեն կոլխոզին, բերքաճավաքը ժամանակին կատարելու ճամար:*

*— Համլիկը ամեն ինչում առաջ է ընկնում,— չգիտես նախանձով, թե գոճունակությամբ ասաց Վոլոդյան:*

*— Գերազանցիկը ամեն տեղ պետք է առաջավոր լինի. Համլիկը ցանկանում է, որ իր ջոկատը կոլխոզի աշխատանքում առաջավոր լինի,— բացատրեց ավագ ջոկատավար Ռաֆիկ Ադամյանը:*

*— Էլ ժամանակ չպետք է կորցնել, ճենց վաղվանից պետք է գործի անցնել,— ասաց Հակոբը:*

*— Այնպես պետք է անել, որ մեր ջոկատը ամենից շատ բերք ճավաքի,— ավելացրեց ջոկատավար Արկադին:*

*Հաջորդ օրը, վաղ առավոտյան առաջին ջոկատի բոլոր պիոներները դաշտումն էին: Կոլխոզի վարչության նախագաճ ընկեր Հայկազը ջոկատին առաջադրանք էր տվել ճավաքել կարտոֆիլի առատ բերքը:*

*— Զգույշ կաշխատեք կարտոֆիլը բաճերով ճողի տակից ճանելիս, վրան վերքեր չառաջացնեք, չփչացնեք,— պատվիրեց Հայկազը և պիոներներին ճավաքելով իր շուրջը ցույց տվեց նրանց կարտոֆիլը ճավաքելու եղանակը:*

*— Զգույշ կճավաքենք, ընկե՛ր Հայկազ...— արձագանքեցին պիոներները և բաճերը վերցնելով աշխատանքի անցան:*

*Առաջին ջոկատն այդ օրը շատ կարտոֆիլ ուղարկեց կոլխոզի պաճեստ:*

*Երեկոյան Արկադին իր ընկերների ճետ միասին գնաց կոլխոզի գրասենյակ օրվա աշխատանքի արդյունքներն իմանալու ճամար: Ճանապարճին նրանց սիրտը տրոփում էր:*

*«Տեսնես ամբողջ մեր ճավաքածը քա՞նի ցենտներ կլինի» անցնում էր ամեն մեկի մտքով: Հաշվում էին՝ վեց, յոթ, գուցե տա՞սը...*

*— Լավ եք աշխատել. մենք շատ գոճ ենք ձեզանից,— այս խոսքերով դիմավորեց նրանց կոլխոզի նախագաճը, զվարթ ժպիտը դեմքին:*

*— Լավ են աշխատել, բայց Համլիկի ջոկատից մի փոքր ետ են մնում,— լրացրեց նախագաճի խոսքը ճաշվապաճ ընկեր Անդրանիկը:*

*Պիոներները մի պաճ տխրեցին:*

*— Բայց մի՞թե Համլիկենք այսօր աշխատում էին,— ճարցրեց Ռոզան:*

*— Այո՛, նրանք սարալանջում էին. ձեզանից առաջ ես նրանց էի գործի դրել,— պատասխանեց նախագաճը:*

*— Ա՛յ, թե ինչպիսին է գերազանցիկ Համլիկը...*

*Մրցումը ջոկատների միջև ավելի բորբոքվեց: Կարտոֆիլից ճետո եկավ ճակնդեղը: Դրանից շատ առաջ, ճացաճատիկի բերքաճավաքի ժամանակ, ամեն մի պիոներ 4—5 ցենտներ ճասկ ճավաքեց:*

*Պիոներները եռանդուն կերպով աշխատում էին: Համլիկենք չէին ուզում զիջել իրենց առաջավոր դիրքերը, իսկ առաջին ջոկատը ջանք էր թափում, որ ճասնի և անցնի երկրորդ ջոկատից:*

*Զայկինայի անվան դրուժինայի պայքարը ուսման և կոլխոզի բերքաճավաքի գործում ճաջողությամբ ավարտվեց: Ուսումնական տարեվերջին առաջին և երկրորդ ջոկատները ոչ մի երկրորդ տարեցի չունեցան: Իսկ մինչ այդ նրանք կոլխոզի պաճեստին ճանձնել էին 300 ցենտներ կարտոֆիլ, 240 ցենտներ ճակնդեղ և մի քանի տոննա ճասկ: Ուսման գերազանցիկներ՝ Համլիկի, Արկադիի, Վոլոդյայի և մյուսների անձնական ճաշվում գրանցված էր 60—70 աշխօր:*

Դ. ԳԱԶԱՋՅԱՆ

# ՍԵՎԱՆԻ ԱՓԻՆ





Նկ. Ան. Չորփաջյանի

Գարուն է։ Լճավան գյուղի պատանի բնասերնե-րը՝ Կամոն, Արմենը և Գրիգորը ծեր ուսուցիչ Մորուք Ասատուրի ու նրա նավատարիմ շան՝ Ջամբարի հետ նավակ նստած ուղևորվում են Գիլլի լիճը։ Այստեղ նրանց է հանդիպում վեցերորդ դասարանի աշակեր-տուհի Հասմիկը, որը վայրի թռչունների ձվեր էր հավաքում։ Հասմիկը ցանկություն է հայտնում միա-նալ նրանց արշավախմբին։ Նա դեռ նավակ չէր նըս-տել, երբ լճի կողմից լսվեց. «Բո՛լտ, բո՛լտ, բո՛լտ»։ Ծեր ուսուցիչը հրաժարվեց «սատանի լիճը» մտնելուց, պատճառաբանելով, որ այդ ձայնը «դժոխքից վռնդ-ված դևի գոռոցն է»։ Բնասերներն ստիպված ծեր ուսուցչին թողեցին Գիլլիի ափին և գնացին լճի խոր-քերը՝ խորհրդավոր ձայնի ուղղությամբ։ Նրանք հա-մակված էին մի ցանկությամբ. պարզել, թե ինչ է գոռում լճի տակ։ Այդ գոռոցի շուրջը ինչ լեգենդներ ասես անցյալում չեն հորինել սնահավատ մարդիկ։

Նրանք իջան եղեգնուտներով շրջապատված, բույ-սերի արմատներից գոյացած մի տարօրինակ, երե-րուն կղզի։ Այնտեղ նրանք գտան վայրի թռչունների ձվերով լիքը բազմաթիվ բներ։ Նրանք հավաքեցին ձվերը և շարունակեցին իրենց ճանապարհը դեպի լճի խորքերը։ Կրկին լսվեց խորհրդավոր գոռոցը։ Կամոն Արմենից վերցրեց լուսանկարչական ապարա-տը, ընկերներին թողեց նավակում, իսկ ինքը մեծ դժվարությամբ առաջ գնաց ձայնի ուղղությամբ։ Նրան խեղդվելուց ազատեց Ջամբարը։ Շան ետևից Կամոյի մոտ եկան նաև Գրիգորն ու Արմենը։ Երբ խորհրդավոր գոռոցը կրկնվեց, Կամոն լուսանկարեց լճի կենտրոնում բարձրացող ջրի սյունը։

Այսպես է սկսվում Վախտանգ Անանյանի «Սևանի ափին» շատ հետաքրքրական, արկածային վիպակը։

Վիպակում նկարագրվում է, թե ինչպես են կազ-մակերպում վայրի թռչունների ֆերմա։ Սակայն շու-տով պարզվում է, որ ֆերմայի ձտերի համար պատ-րաստված ջրի ավազանը չորացել է։ Պատանի բնա-սերները ուղևորվում են դեպի Գիժսարի ստորոտնե-րում գտնվող Սև ժայռերը ջուր որոնելու։ Նրանք գտնում են դարեր առաջ երկրաշարժի հետևանքով գետնի տակն անցած գետակը և նրա ջուրը ուղղում դեպի կոլխոզի բարձրադիր արտերն ու թռչնաբուծա-կան ֆերմայի ջրի ավազանը։ Պարզվեց, որ կորած ջուրը ստորերկրյա ճանապարհով դուրս էր գալիս Գիլլիում և այդ ջուրն էր խորհրդավոր գոռոցների բուն պատճառը։

Այնուհետև Վ. Անանյանը պատմում է, թե ինչ-պես են բնասերները վայրի մեղվանոց գտնում, այգի տնկում, անտառաշերտեր սահղծում...

«Սևանի ափին» գրքի մեջ կան հրաշալի էջեր՝ նվիրված բնության նկարագրությանը, ուսուցողությա-նը, վայրի թռչունների ու գազանների կյանքին։

Վիպակի հերոսները, սովետական արևի տակ աճած ու դաստիարակված պատանիներ են։ Նրանք համառ են, հաստատակամ և հասնում են իրենց նպատակին։

«Սևանի ափին» վիպակը մանկա-պատանեկական լավագույն գրքի համամիութենական կոնկուրսում, 1950 թվականին, արժանացել է երկրորդ մրցանակի։ Այնուհետև այդ գիրքը թարգմանվել և հրատարակվել է Ուկրաինայում, Ադրբեջանում, Լեհաստանում, Բուլ-ղարիայում, Ալբանիայում, Գերմանական Դեմոկրա-տական ռեսպուբլիկայում և մի շարք այլ երկրներում։

Հայպետհրատը այդ գիրքը հայերեն լույս է ըն-ծայել 1951 թվականին, իսկ մոտ ժամանակներս նաև ռուսերեն լեզվով։

Վ. Անանյանի գիրքը կարդացվում է մեծ հետա-քրքրությամբ։

Ս. ԼՈՒՍԵՆՑ

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## Պատրաստեցեք հնգաթև աստղ

Պատի թերթի, ալբոմի ձևավորման ժամանակ, պիոներական կրծքանշանի կամ խաղալիքների համար կարիք է լինում հնգաթև աստղ պատրաստել։ Դրա համար սովորաբար անհրաժեշտ են քա-նոն, կարկին և անկյունաչափ. բայց միանգամայն համաչափ աստղ կարելի է պատրաստել և առանց այդ պիտույքների։

Վերցրեք մի թուղթ (նկար «Ա»), ծալեք այն երկու հավասար մասի (նկար «Բ»)։ Հետո նկար «Գ»-ի ցույց տված ձևով մի անգամ էլ ծալեք այնպես, որ «ա» անկյունը «բ» անկյունից երկու անգամ մեծ լինի։ «ա» անկյունը նորից ծալելով կիսեք երկու հա-



վասար մասի (նկար «Դ») և վերջապես «բ» անկյունի ճատվածը եզրագծով ծալեցեք (նկար «Ե»): Մնում է վերցնել մկրատը և «Զ» նկարում կետավոր գծով կտրել թուղթը՝ իր ծալվածքով: Մնացած թուղթը բացելուց հետո, դուք կստանաք ճիշտ այնպիսի աստղ, ինչպես նկարումն է: Որքան ճիշտ ծալեք «ա» և «բ» անկյունները, այնքան ուղիղ աստղ կստացվի:

Եթե անհրաժեշտ է մեծ աստղ պատրաստել, պետք է մեծ թուղթ վերցնել կամ ծալված թղթի ծայրից հեռու կտրել. իսկ եթե փոքրիկ աստղ եք ուզում, վերցրեք կամ փոքր թուղթ, կամ ծալվածքի սուր ծայրին մոտ կտրեցեք:

Կտրված աստղը կարելի է ներկել, իսկ արտանկարելու համար աստղը պետք է տեղադրել այնտեղ, որտեղ լինելու է նրա նկարը և եզրագծերով նկարը փոխադրել սպիտակ թղթի վրա:

*Մ. ՄԱԴԱԹՅԱՆ*

### Լողացող նավեր

Նկարի վրա դուք երկու նավ եք տեսնում: Նրանցից մեկը լողում է ծովի, իսկ մյուսը՝ գետի վրա:



Նավերը միատեսակ են, ունեն միևնույն կշիռը, ձևն ու ծավալը:

Ո՞ր նավն է ծովի վրա լողում և ո՞րը գետում:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ*
*Չորրորդ էջը՝ նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ*




*Խմբագիր՝* ՍԵՎՈՒՆՑ Գ.
*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԲԱՏԻԿՅԱՆ ՀՐ., ԻՍԱԲԵԿՅԱՆ Է., ՀԱԿՈԲՅԱՆ Գ., ՄՈՎՍԻՍՅԱՆ Ա., ՍԻՄԱԿ, ՍԻՄՈՆՅԱՆ Ե., ՏԱԼՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ս.

Журнал „Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*
*ՎՖ 05418, Պատվեր 373. Տիրաժ 5000. Տպագրական 2 1/4 մամուլ. Ստորագրված է տպագրության 9/VII—52 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1952 թ.*

# 1952 ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ գրադարանը

Հուլիսի մեկին լրացավ աշխարհի ամենամեծ գրադարանի, Մոսկվայի Վ. Ի. Լենինի անվան Պետական հանրային գրադարանի հիմնադրման 90 տարին:

Վ. Ի. Լենինի անվան գրադարանը կազմակերպվել է 1862 թվականին Պետերբուրգից Մոսկվա փոխադրված Ռումյանցևյան թանգարանի գրքային ֆոնդի հիման վրա: Ցարական կարգերի ժամանակ, բոլոր կուլտուրական հիմնարկների նման, այս թանգարանը ևս դժվարությամբ էր պահպանում իր գոյությունը:



Լենինի անվան գրադարանը, որ անցյալից ժառանգություն էր ստացել ընդամենը 100.000 կտոր գիրք, Սովետական կառավարության բացառիկ հոգատարության շնորհիվ, դարձավ աշխարհի ամենահարուստ գրադարանը: Այդ գրադարանն այժմ ունի ավելի քան տասն ու կես միլիոն գիրք, որոնք հրատարակվել են Սովետական Միության ժողովուրդների 80 և արտասահմանյան 40 լեզուներով: Այստեղ են գտնվում աշխարհի մեծագույն գրողների, գիտնականների և փիլիսոփաների հազվագյուտ գրքերը, ցարական Ռուսաստանում արգելված հրատարակությունները, բոլշևիկյան «Իսկրա», «Պրավդա» և այլ թերթերի կոմպլեկտները, Մարքսի, Էնգելսի, Լենինի, Ստալինի երկերը: Գրադարանում է գտնվում չինացի Դուշու Ցզի-չանի 5200 հատորից բաղկացած էնցիկլոպեդիան: Գրադարանում կա նաև մի բաժին, որտեղ գտնվում են գրեթե բոլոր ռուս կլասիկների ձեռագրերը:

Գրադարանի 10 ընթերցասրահում կարող են պարապել 1500 հոգի: Գրադարանում պարապել են շատ նշանավոր գիտնականներ, գրողներ, հասարակական գործիչներ: 1893—1897 թվականներին այստեղ է պարապել նաև Վ. Ի. Լենինը:

## Ադմիրալ Նախիմով

Պավել Ստեպանովիչ Նախիմովը ծնվել է 1803 թվականին Սմոլենսկում, պաշտոնաթող սպայի ընտանիքում: Մանուկ հասակում Նախիմովն ընդունվեց ծովային դպրոց, ուր շուտով աչքի ընկավ իր փայլուն ընդունակություններով և 15 տարեկան հասակում միչմանի կոչում ստացավ:

1822 թվականին Նախիմովը լեյտենանտի աստիճան ստացավ: Հինգ տարի հետո նա «Ազով» նավի սպաների թվում մասնակցեց Նավարինյան մարտին: Քսանինը տարեկան Նախիմովը դարձավ «Պալլադա» նավի հրամանատարը: 1836 թվականին ստացավ առաջին կարգի կապիտանի, իսկ ինը տարի հետո կոնտր-ադմիրալի կոչում: Սինոպի ճակատամարտում (1853 թվականին) Նախիմովը միհանի ժամում ջախջախեց թյուրքերի նավատորմը, որ այն ժամանակ աշխարհի ամենաուժեղ նավատորմերից մեկն էր: Թյուրքերին օգնող Անգլիայի հրամանատարը փախուստի դիմեց: Ռուսական նավատորմի հաղթանակը վախեցրեց Անգլիային ու Ֆրանսիային: Նրանք 1854 թվականի հունվարին միացյալ ուժերով մտան Սև ծով: Թվում էր, թե շուտով Ռուսաստանը պիտի պարտվի, բայց ադմիրալ Նախիմովն իր զորքով փրկեց Ռուսաստանի պատիվը: Մի ամբողջ տարի նա Սևաստոպոլում հերոսաբար դիմադրեց անգլիական և ֆրանսիական զորքերին, որոնց օգնում էին Թյուրքիան և Սարդինիան: Մի անգամ Նախիմովը դիրքերն ստուգելիս ծանր վիրավորվեց և 1855 թ. հունիսի 30-ին վախճանվեց: Նախիմովի ղեկավարությամբ Սևաստոպոլի պաշտպանությունը փառավոր մի էջ է մեր Հայրենիքի պատմության մեջ:



## Իվան Այվազովսկի

Այվազովսկիների տան պատի վրա նկարված էր մի զինվոր: Ոչ ոք չէր հավատում, որ դա երեխա է նկարել:

Այդ նկարի հեղինակ՝ Իվան Կոնստանտինովիչ Այվազովսկին ծնվել է 1817 թվականին Թեոդոսիայում, հայ առևտրականի ընտանիքում: Սիմֆերոպոլի գիմնազիայում սովորելու տարիներին, ակնհայտ դարձավ Այվազովսկու նկարչական շնորհքը: Մեծերը նրան ուղարկեցին Պետերբուրգի նկարչական ակադեմիան: Ուսանողական տարիներին Այվազովսկին մեծ եռանդով ուսումնասիրում էր մեծ նկարիչների գործերը: Այդ տարիներին նկարած առաջին էտյուդի համար («Ամպերը ծովի վրա») Այվազովսկին արծաթե մեդալ ստացավ, իսկ «Անդորրություն» նկարի համար՝ ոսկե մեդալ: Ջերմ ընդունելություն գտավ նաև ուսանողական տարիներին նկարած «Մեծ արշավանք դեպի Կրոնշտադտ» նկարը: Շուտով Այվազովսկու գործերը գրավեցին Բրյուլովի, Գլինկայի, Պուշկինի և ուրիշ նշանավոր մարդկանց ուշադրությունը: Նրանք քաջալերեցին երիտասարդ նկարչին:



1840 թվականին Այվազովսկին մեկնեց արտասահման: Իտալիայում նկարած նրա մի շարք նկարները, Փարիզում կազմակերպված ցուցահանդեսը նրա անունը հռչակեցին ամբողջ աշխարհում: Այվազովսկին աշխարհի մեծագույն ծովանկարիչն է: Նրա «Իններորդ ալիքը», «Ծովը» և շատ ուրիշ նկարներ արվեստի հրաշալիքներ են: Նրա հայրենասիրական վառ զգացումները վարպետորեն արտահայտված են՝ «Պետրոս առաջինը Ֆիննական ծոցում» և ուրիշ ստեղծագործությունների մեջ: Այվազովսկին մահացել է 1900 թվականին, 83 տարեկան հասակում:

# ԿԱԶՄԵՑԵՔ ԿՈԼԵԿՑԻԱՆԵՐ ԵՎ ՀԵՐԲԱՐԻՈՒՄՆԵՐ

